1917 № 1.—Յունուարի 1 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռ.։ Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ** Թիֆլիս, Արասաբաղեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։

Տպագրելու ուղարկուած յօդուածները կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ 1917 Թ.

ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ **ՀԱՄԲԱՒԱԲԵՐ** ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

ԳՐԱԿԱՆ-ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

*ԾՐԱԳԻՐ. 1. Պաշտօնական տեղեկութիւններ, կառավարչական կարգադրութիւններ, Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան կենտրոնական Խորհրդի ու ճիւղերի հաշիւները, որոշումները, արձանագրութիւնները և շրջաբերականները. 2. Հեռագիրներ, ներքին և արտաքին տեսութիւններ, հասարակական, կուլտուրական և գիտական բովանդակութեամբ յօդուածներ, գրական նորութիւններ և պատմական տեսութիւններ, վիպակներ, պատմուածքներ, ոտանաւորներ և քննադատութիւն 3. Քրոնիկոն, տեղեկութիւններ, կենսագրութիւն և ժառանգաւորութիւն. 4. Արուեստ, թատրոն, երաժշտութիւն և նկարներ. 5. Փոստարկղ և յայտարարութիւն։*

*Թերթը բաղկացած կլինի 8 (երբեմն 12—16) մեծադիր երեսներից և լոյս կտեսնէ կիրակի օրերը։*

*Բաժանորդագինն է տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռ.։ Արտասահման 5 ռուբլի, կէս տարուան 3 ռ.։*

*Բաժանորդագրութիւն ընդունւում է խմբագրատանը, Թիֆլիս, Արասաբաղեան հրապարակ, № 7 և Ընկերութեան գաւառական ճիւղերի վարչութիւններում։*

*Խմբագիր՝ Ս. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ*

*Հրատարակիչ՝ ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ՆՈՐ-ՏԱՐԻ

*Այսօր դիմաւորում ենք Նոր-Տարին, թեակոխում ենք 1917 թուականը։*

*Ծանր է այս Նոր-Տարին, խեղդող մթնոլորտի մէջ է սկսւում նա։*

*Սովորական խանդավառութիւնը, ցնծութիւնը անհետացել է։*

*Ամեն տեղ տիրում է տրտմութիւն, ամենքի սիրտը լի է կսկիծով և խորին ցաւով։*

*Համաշխարհային արիւնահեղ պատերազմը կլանեց անթիւ զոհեր. կլանեց կռուող երկիրների լաւագոյն, երիտասարդ ոյժերը, աւերեց տէրութիւններ, զրկեց տնից-տեղից ոչ միայն հասարակ մահկանացուների, այլ և գահակալների։*

*Անթիւ են այնպիսիները, որոնք ողբում են իրենց յաւիտեանս կորցրած մերձաւորներին, սիրելիներին. դժուար է հաշուել պատերազմի զոհ՝ օտարութեան մէջ թափառող կիսաքաղց և կիսամերկ մարդկանց թիւը։*

*Թշուառութիւն է ամենուրեք։*

*Նոր-Տարի ասելով հասկացւում է նոր կեանքի շրջան, վառվռուն յոյսերով, լաւագոյն ակնկալումներով։*

*Բայց այս Նոր-Տարուայ արշալոյսը դժգոյն է. նա սպառնում է նոր փոթորիկներ ու նորանոր արհաւիրքներ։*

*Մեծ յուզմունքներով անցկացրինք անցած ցաւոտ տարին իր բոլոր դառնութիւններով. այժմ մտնում ենք նոր սև տարի, որը, գուցէ աւելի ահաւոր լինի իր անակնկալներով և փորձանքներով։*

*Այս ահռելի, մարդկութեան պատմութեան մէջ չը տեսնուած և չը լսուած պատերազմից տուժեցին և տուժում են շատ ազգեր։*

*Բայց դառնութեան լիքը բաժակը վիճակուեց բազմաչարչար հայ ազգին։*

*Սրա կորուստները արտասովոր են, անհամեմատ մեծ են քան թէ իսկական մարտնչող կողմերի կորուստները։*

*Երբէք Հայաստանը չէր տեսած այսքան աւերումներ—զուլումներ. երբէք հայի դարաւոր թշնամին չէր եղած այնքան անգութ և գազանացած, ինչպէս այս անգամ։*

*Մոլեռանդ օսմանցիները և վայրենի քրդերը, ստանալով ներշնչում մայրաքաղաքի իրենց արիւնարբու ղեկավարներից, սրի ու հրի ճարակ դարձրին Տաճկահայաստանը։*

*Այրուեցին, քանդուեցին, կողոպտուեցին քաղաքներ, գիւղեր. սրի անցկացրին հարիւր հազարաւոր հայեր, չը խնայուեց ոչ երեխայ, ոչ կին։*

*Մեր տաճկահայ եղբայրների այս դառը վիճակը անցեալ տարի, ինչպէս և առաջ, պատերազմի սկզբից, գրաւել և լարել է մեր ուշադրութիւնը։ Ռուսահայութիւնը իր ամբողջ ոյժերով նուիրուեց նրանց թշուառութիւնը թեթևացնելու։*

*Մեր երկրի նոյն իսկ նշանաւոր երևոյթները և կենսական խոշոր խնդիրները չը կարողացան կենտրոնացնել իրենց վրայ այն ուշադրութիւնը և հետաքրքրութիւնը, որ անշուշտ բնական պայմաններում տեղի կունենար և մենք մեծ թափով կը զբաղուէինք այդ հարցերով։ Այսպէս անցան համարեա թէ աննկատ անցեալ տարի զեմստվոյի, պոլիտեխնիկումի, կանանց բժշկական բաժանմունքի և այլ շատ հասարակական ու կուլտուրական խնդիրներ։*

*Հայի դրութիւնը կրկին մնում է լարուած և յուզիչ։*

*Դժուար է գուշակել այսօր, թէ ինչ կը լինի վաղը։*

*Հայի ճակատագիրը դեռ չի պարզուել. նրա ապագան դեռ մթութեան՝ գուցէ և վտանգի մէջ է։*

*Սակայն այդ անորոշ դրութիւնը չպէտք է տարուբերի և վհատեցնի մեզ։*

*Վտանգաւոր վիճակը անվտանգ դարձնելու, մթութիւնը պարզելու, մեր տուած զոհերի համար գոհացում ստանալու և վերջապէս մեր ազգային իդէալին հասնելու համար մեզանից պահանջւում է մեծ տոկունութիւն, հաստատակամութիւն և անձնուէր ու ներդաշնակ աշխատութիւն։*

*Հային հովանաւորող հզօր պետութիւնները՝ մեծ Ռուսաստանը ու նրա արժանաւոր դաշնակիցները՝ Անգլիան, Ֆրանսիան և Իտալիան չեն մոռանալ մեր տաճկահայ եղբայրներին, նրանց իրաւացի դատը, և պէտք է յուսալ, որ արդարացի հատուցում կը տան։*

*Ահա՝ այս յոյսերով և այս գիտակցութեամբ մտնենք Նոր-Տարին։*

*Կատարենք մեր սրբազան պարտականութիւնը մեր տանջուած և չարչարուած ազգի հանդէպ։*

*Խորապէս հաւատանք, որ հայ ազգը ունի ապագայ, որ մի օր կը ծագի և հայի արեգակը և Հայաստանը կապրի հայի համար։*

**Ս. Յ.**

---

## ՆՇԱՆԱՒՈՐ ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿ

(1876—1916)

*Անցած 1916 թուականը, բացի այն հանգամանքից որ կազմում է մէկը համաշխարհային ահռելի պատերազմի տարիներից, նշանաւոր է և այն կողմից, որ նա բոլորեց մի շատ կարևոր ժամանակաշրջան։ Դա քառասնամեայ շրջանն է այն դէպքերի, որոնք ծագեցին և զարգացան Բալկանեան թերակղզում և որոնց առաջացրած հետևանքները այսօրուայ մեծ պատերազմի կարևոր դրուագներն են կազմում։ Բաւական է ասել որ 1876-ի դէպքերից էր որ ծնուեց անկախ Բուլղարիան, որ այսօր կատաղութեամբ կռւում է իր ազատարար Ռուսաստանի դէմ։*

*Բայց առանձնապէս կարևոր է այս քառասնամեակը մեզ, հայերիս համար։ Նոյն 1876 թուականից է, որ մեր պատմութիւնը մտնում է նախընթաց դարերում շատ քիչ նմանութիւններ ունեցող մի մեծ շարժման մէջ—ազգայնական շարժում, որ*

շարժումն այնքան անհաւոր կերպարանք ստացաւ, որ Կ. Պոլսում և այլ քաղաքներում քրիստոնեաները ահ ու սարսափի մէջ էին։ Առաջին անգամ թիւրք ֆանատիկոսութիւնը պայթեց Սալոնիկում ապրիլի 23-ին. կատաղած ամբոխն սպանեց ֆրանսիական և գերմանական հիւպատոսներին։ Միևնոյն օրերում ապստամբութիւն ծագեց հարաւային Բուլղարիայի մի գիւղում և թիւրքերը, պատրուակ դարձնելով այդ շարժումը, իրանց յատուկ գազանութիւններով մինչև 25 հազար բուլղար կոտորեցին մի քանի օրուայ մէջ (մայիսի սկզբին)։

Լէօ

(Վերջը հետևեալ համարում)

# Ներքին տեսութիւն

## ՊԵՏԱԿԱՆ ԿԵԱՆՔ

### ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՆԵՐՔԻՆ ԿԵԱՆՔԸ 1916 Թ.

Եւ որովհետև այդ բոլորը մ ե ր կ ա ց ա ւ Պ. Դումայի այս նստաշրջանի նոյեմբերի 1-ի պատմական նիստում և որովհետև մենք աւելի որոշակի այդ ընդհանուր քայքայման գլխաւոր պատճառները այս մի տարուայ ընթացքում արձանագրել և ընդգծել չենք կարող, ուստի և կըբաւականանանք այդ հռչակաւոր նիստի պատմական ճառերի տուեալներով, որ քաղում ենք Русск. Вѣд. թերթի նոյեմբերի 29-ի №-ից։

—«Դուք յիշում էք, ասում էր Միլիւկովը, թէ ինչ հանգամանքներում գումարուեց Պետ. Դուման աւելի քան մի տարի առաջ, 19-ին յուլիսի 1915 թ.։ Դուման մեր պատերազմական անյաջողութիւնների ազդեցութեան տակ էր։ Այդ անյաջողութիւնների պատճառը նա ռազմամթերքների պակասութիւնը համարեց և սրա պատճառն էլ զինուորական նախարար Սուխոմլինովի վարմունքը։ Դուք յիշում էք, որ երկիրը այն ժամանակ բոլորի համար ակնյայտ վտանգի ազդեցութեան տակ՝ ժողովրդական ուժերի միացումն և երկրի վստահութիւնը վայելող անձերից բաղկացած նախարարութիւն էր պահանջում... Դուք յիշում էք նոյնպէս, որ իշխանութիւնը այդ ժամանակ զիջումներ արաւ։ Մինչև Դումայի գումարուելը երկրի համար ատելի նախարարները հեռացուեցին։ Հեռացուեց Սուխոմլինովը, որին երկիրը դաւաճան էր համարում։ Եւ ժողովրդի ներկայացուցիչների պահանջմամբ Պոլիվանովը յայտարարեց 28-ին յուլիսի, որ քննիչ յանձնաժողով է կազմուած նախկին զինուորական նախարարին դատի ենթարկելու... Որպիսի՜ տարբերութիւն, պարոններ, այսօր, պատերազմի 27-րդ ամսին—այնպիսի մի տարբերութիւն, որ առանձնապէս նկատում եմ ես այդ ժամանակամիջոցում մի քանի ամիս արտասահմանում անցկացնելով։ Մենք այսօր նոր դժուարութիւնների առաջ ենք կանգնած, և այդ դժուարութիւնները ոչ պակաս բարդ ու դժուար են, ոչ պակաս խորունկ՝ քան այն, որոնց առաջ կանգնած էինք անցեալ գարնան։ Կառավարութեանը ահագին միջոցներ էին հարկաւոր ժողովրդական տնտեսութեան ընդհանուր քայքայման դէմ մաքառելու համար։ Մենք սակայն նոյնն ենք ինչ որ առաջ... Բայց ես կասեմ բացայայտ. տարբերութիւն կայ դրութեան մէջ։ Մենք կորցրել ենք մեր հաւատը, որ այս կառավարութիւնը կարող է մեզ դէպի յաղթութիւն տանել, որովհետև այս կառավարութեան վերաբերութեամբ ուղղման և բարելաւման փորձերը անյաջող անցան։ Բոլոր դաշնակից պետութիւնները կառավարութեան մէջ են ընդունել ամենապիտանի մարդկանց բոլոր կուսակցութիւններից... Իսկ ինչ է արել մեր կառավարութիւնը... Եւ եթէ մենք առաջ ասում էինք, թէ մեր իշխանութիւնը ոչ գիտութիւն ունի, ոչ տաղանդ, որ անհրաժեշտ են այս րոպէի համար, այժմ այդ իշխանութիւնը աւելի ցած է ընկել, քան սովորական ժամանակը։ Եւ մեր ու կառավարութեան միջև եղած անդունդը անանցանելի է դարձել։ Պարոններ, մի տարի առաջ դատի ենթարկուեց Սուխոմլինովը... այն ժամանակ հեռացուեցին մինչև Դումայի նստաշրջանը ատելի նախարարները, իսկ այժմ նրանց թիւը աւելացել է մի անդամով։ Չըդիմելով իշխանութեան խելքին ու գիտութեան՝ մենք կոչ արինք այն ժամանակ նրանց հայրենասիրութեան և բարեխղճութեան։ Կարո՞ղ ենք այդ այսօր էլ անել»...

Ապա Միլիւկովը թւում է՝ թէ ինչպէս հաստատ կասկածներ կային «մութ ուժերի» պետական դաւաճանութեան մասին, որի ամենամեծ ստուերն ընկնում է աւագ նախարար Շտիւրմերի վրայ։ Նա ցոյց է տալիս, թէ ինչպէս գերման-աւստրիական թերթերը միաձայն ուրախութիւն էին յայտնում, որ Սազոնովին փոխարինում է հոգեմայոտէր Շտիւրմերը. օր. Neue Fr. Presse-ն գրում էր. «Որքան ռուսացած լինի ծերունի Շտիւրմերը, բայց նոյնպէս բաւական տարօրինակ բան է, որ մի գերմանացի պէտք է ղեկավարի արտաքին քաղաքականութիւնը մի պատերազմի, որ համասլաւոնական գաղափարներից է առաջ եկել... «Ցանձին»

Շտիւրմերի մենք մի զէնք ենք ձեռք բերել, որ կարելի է գործածել ըստ ցանկութեան՝ Դուման թուլացնելու քաղաքականութեան շնորհիւ. Շտիւրմերը դարձել է այն մարդը, որ բաւարարում է գաղտնի ցանկութիւնները աջակողմեաններին, որոնք չեն կամենում դաշնակցել Անգլիային»։

Այս ամենից—առանց երկար մեկնութիւնների—բացայայտ է, թէ որքան սերտօրէն են շաղկապուել Ռուսաստանի արտաքին ու ներքին քաղաքականութիւնները, թէ որոնք են մեր երկրի ներքին տնտեսական քայքայման ու թուլութեան գլխաւոր պատճառները և փրկութեան ճանապարհները։ Պատերազմը, ճիշտ է, աւերում ու քայքայում է, բայց նա ստիպում է միաժամանակ նաև խ ն ա յ ե լ և ն ո ր մ ի ջ ո ց ն ե ր ս տ ե ղ ծ ա գ ո ր ծ ե լ։ Իսկ մեր երկրում այս մի տարուան ընթացքում, աւաղ, մի հակարանական, մի կոյր ճակատագրականութեամբ բոլոր «մութ և հզօր ուժերը» միացել էին քայքայելու և դէպի անկում տանելու երկիրն ու իր խեղճ ժողովրդին։

Ահա այսպիսի ծանր քաղաքական և տնտեսական պայմաններում գումարուեց Պ. Դումայի այս վերջին նստաշրջանը (սեսսիան) ասելու իր վճռական խօսքը և ժողովրդի ձայնի արտայայտիչը հանդիսանալու։

Վ. Խ.

(Շարունակելի)

---

## ՄԵՐ ԴՊՐՈՑՆԵՐԸ 1916 ԹՈՒԱԿԱՆԻՆ

Համաշխարհային պատերազմը իր՝ պատմութեան մէջ չեղած արհաւիրքներով տակն ու վրայ անելով հայ ժողովրդի մեծամասնութեան կեանքը, չէր կարող հարկաւ չազդել նաև մեր դպրոցական գործի վրայ։ Դպրոցը ժողովրդի կեանքի ճիշտ արտացոլումն է. երբ բարեկեցիկ է ու խաղաղ ժողովուրդը, դպրոցն էլ բնականոն (նորմալ) զարգացման ընթացքով է առաջ գնում. իսկ երբ ժողովրդի կեանքի բնական ու կանոնաւոր ուղիները խանգարւում են, դպրոցն էլ անկասկած շեղուելով ուղիղ ճանապարհից՝ չէ կարողանում այլ ևս լիութեամբ ծառայել այն նպատակին, որի համար գոյութիւն ունի։ Հասարակական կեանքի ալեկոծման ժամանակ պղտորուած կոհակները զարնւում են նաև դպրոցի որմերին և եթէ վերջիններս ամրակուռ չեն, ողողւում են և ներսը...։

Տաճկահայերի դպրոցական գործը, որ վերջին տասնամեակի ընթացքում մեծ զարկ էր առացել և արագ նուաճումներ էր անում, հիմնայատակ եղաւ և կործանուեց՝ շնորհիւ տաճիկ կառավարութեան գազանային հակումների. երբ հայ ժողովուրդը սրի ճարակ դարձաւ, երբ երկիրը մոխրակոյտի վերածուեց, ում և ում համար պէտք է լինէր դպրոցը։ Վանի, Էրզրումի, Մուշի, Տրապիզոնի և այլ հայաշէն քաղաքների դպրոցական շէնքերը արիւնով ողողուած և քարակոյտեր դարձած՝ աղիողորմ պատմում են հայ աշակերտութեան կսկծալի ողբերգութիւնը։

Պատերազմի պատճառով տուժեց նմանապէս և Կովկասի հայ դպրոցական գործը։ Մեր բարձրագոյն դպրոցը՝ Էջմիածնի Ճեմարանը համարեա մի տարի փակ մնաց և աշակերտութիւնը ցրուեց։ Էջմիածնի Ուսումնական Կենտրոնական Յանձնաժողովը քայքայուեց և այդպիսով մեր դպրոցների վերին հսկողութիւնը չքացաւ. ընդհանուր կարգ ու կանոնի միութեան ձգտումը խափանուեց՝ լայն ասպարէզ բանալով կենտրոնախոյս և առանձնակի գործելակերպի համար։

Թեմական և միջնակարգ օրիորդաց դպրոցները թէև արտաքուստ զգալի կերպով չտուժեցին, սակայն և չյառաջադիմեցին. Թեմական դպրոցների նոր ծրագիրը չթեթևացրեց աշակերտների ծանրաբեռնութիւնը, օրիորդաց միջնակարգ դպրոցները չունեցան մի ընդհանուր և համանման ծրագիր և դրանցից իւրաքանչիւրը ղեկավարւում է իւր առանձին ծրագրով։

Թեմական և օրիորդաց միջնակարգ դպրոցների անցեալ տարուայ ընթացաւարտներից միմիայն չնչին տոկոսը նուիրուեց ուսուցչական ասպարէզին՝ գերադասելով այլ աւելի թեթև ու շահաւէտ պաշտօնները. այս տեսակէտով ահա ուրեմն տուժեցին և միջնակարգ դպրոցները։

Մամուլի և հասարակական մի շարք խորհրդակցութիւնների նիւթ դարձաւ թեմական դպրոցների ընթացաւարտների ռուսական բարձրագոյն դպրոցներում ընդունուելու խնդիրը։ Հարցը բազմակողմանի քննութեան ենթարկուեց. սկզբունքային հակառակորդներ միայն մի քանի անհատներ հանդէս եկան, բայց և այնպէս խնդիր յարուցանելու դէմ շատ լուրջ առարկութիւններ եղան սկզբունքով համաձայնուողների կողմից։ Սպասւում է՝ թէ ինչ հետևանք կունենայ նոյն խնդրի համար Նոր-Նախիջևանի հայերի դիմումը կառավարութեան։

Միջնակարգ դպրոցների ուսուցիչների մի փոքր մասը ստիպուած եղաւ թողնել ուսուցչական ասպարէզը՝ պարտադիր զինուորական ծառայութեան մտնելու պատճառով. սրանց տրուեց իրենց ամբողջ ռոճիկը կամ ռոճկի կէսը, սակայն միայն մի տարի ժամանակով։

Պատերազմի պատճառով առաջացած կեանքի թանգութիւնը նեղը լծեց և միջնակարգ դպրոցների ուսուցիչներին. մինչդեռ սովորական կեանքը մի քանի հարիւր տոկոսով թանգացաւ, ուսուցիչները նոյն իսկ ամենաապահով դպրոցներում յաւելում ստացան 10 կամ 20 տոկոս միայն։ Այսպիսի վերաբերմունքը արդարացի չէ. այժմ նոյն իսկ հաշուապահները, գրասենեակային կառավարիչները 250—500 ամսական ռոճիկներ են ստանում և այդ բնական է համարւում այժմեան հանգամանքներում, սակայն համալսարանաւարտ և տասնեակ տարիներ ծառայած ուսուցիչներից շատ քչերի ռոճիկը ամենաշատը ամսական 150—200 ռուբլի է։ Նոյն միջնակարգ դպրոցները մի քանի տարի առաջ աւարտողներն անգամ այժմ ուրիշ ասպարէզներում իրենց ուսուցիչներից շատ աւելի ռոճիկներ են ստանում։ Ես ևս այն համոզմունքն ունիմ, որ «որ ոչ միայն հացիւ կեցցէ մարդ», սակայն և այն չարախնդացներից չեմ, որոնք աւելացնում են «այլ և սպանախիւ»...։ Ես էլ ուսուցչութիւնից գաղափարականութիւն պահանջողներից եմ, սակայն որոշ չափ պէտք է պահպանել, հակառակ դէպքում, եթէ այսպէս շարունակուի, մեր դպրոցները զուրկ կմնան իրենց գործին հմուտ մասնագէտ ուսուցիչներից։

Պատերազմի պատճառով ամենից շատ տուժեցին մեր ծխական-տարրական դպրոցները. սրանց բաղդը կապակցուած լինելով մեծ մասամբ գիւղացութեան հետ, աւելի ևս ենթարկուեցին կեանքի ալէկոծման ազդեցութեանը։ Ամենից շատ գիւղը տուժեց, բնականաբար և գիւղի դպրոցն էլ պէտք է նոյն վիճակումը լինէր. այստեղ պատճառներն աւելի բարդուեցին, քան միջնակարգ դպրոցների նկատմամբ։ Գիւղը զրկուեց աշխատանքի ընդունակ ձեռքերից, ցանքսը պակասեց գիւղում, մնացածները մեծ մասամբ աղքատացան հացի թանգութեան պատճառով. սկզբում ուսուցիչներից շատերը զինուոր դարձան, յետոյ էլ խուսափեցին գիւղ գնալուց և այլ պաշտօններ գտան. սկզբում ասպարէզը մնաց վարժուհիներին, սակայն սրանք էլ վերջը գերադասեցին քաղաքներում մնալ և այլ աւելի շահաւէտ պաշտօններ ձեռք բերել։ Այսպիսով գիւղական դպրոցները մնացին նիւթական միջոցներից զուրկ և առանց դասատուների. հետևանքն այն եղաւ, որ շատ դպրոցների դռներ փակ մնացին կամ նորից ասպարէզ եկան կիսագրագէտ դասատուներն ու խալիֆաները։

Քաղաքներում գտնուող ծխական դպրոցները թէև դեռ չեն փակուել, սակայն տարաբաղդաբար, եթէ այս դրութիւնն երկար

շարունակուի, որանք ևս գիւղական դպրոցների վիճակին կենթարկուեն։ Անհնարին է այլևս 25—30 ռուբլի դասագնով ուսուցիչներ կամ վարժուհիներ գտնել. ուսուցիչները երկար սպասեցին, որ իրենց վիճակի մասին մտածող լինի, բաղխեցին հոգաբարձուների, առաջնորդների դռները, նոյն իսկ դիմեցին Վեհափառ Կաթողիկոսին, սակայն նրանց դարդին դարման անող չեղաւ և ստիպուեցին դիմել իրենց ևս անհաճոյ միջոցին—գործադուլի սպառնալիքին. այդ միտքն իրագործեց նախ Երևանի ուսուցչութիւնը և ապա Թիֆլիսինը։ Այս միջոցը որոշ արդիւնք տուեց. շատ տեղեր դասագինը բարձրացրին մինչև 50 ռուբլու, բայց և այնպէս անհրաժեշտ է լուրջ միջոցներ ձեռք առնել դպրոցների ապահովութիւնը տևական դարձնելու համար։ Եթէ հայ հասարակութիւնը գիտակցում է՝ թէ որքան անհրաժեշտ են մեզ համար տարրական դպրոցները, թէ մեր ազգային ինքնուրոյնութեան համար որքան մեծ դեր են կատարում այդ դպրոցները, պէտք է ամենալուրջ ուշադրութիւն դարձնի դպրոցական խնդրի վրայ։

Մենք սիրում ենք բարձրաբարբառ ասել՝ թէ կուլտուրական ժողովուրդ ենք, մեր դրացիներն էլ մեզ համարում են ազգային ինքնագիտակցութեան հասած ժողովուրդ, սակայն մեր անտարբեր վերաբերմունքը դէպի մեր ազգային կուլտուրայի հիմնաքարը կազմող դպրոցական գործը հակառակն է ապացուցանում։ Եթէ մենք ազգային գիտակցութիւն ունենայինք, Կովկասի հայաբնակ գիւղերից և ոչ մէկն առանց հայ դպրոցի չպէտք է լինէր. սակայն Երևանի թեմի մօտ 600 գիւղերից միայն 150-ը կամ 170-ը դպրոց ունի, Թիֆլիսի ընդարձակ թեմի մօտ 350 գիւղերում կայ միայն 100—110 դպրոց. Ղարաբաղի մօտ 250 գիւղերում կայ միմիայն 45 դպրոց։

Այս ստոյգ թուերից երևում է, թէ որքան քիչ են մեր դպրոցները. սակայն գոնէ այդքանը լինէին կանոնաւոր ու նիւթապէս ապահով. տարաբաղդաբար այդպէս չէ. դրանցից 130-ին միայն Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութիւնն է նպաստ տալիս՝ իւրաքանչիւրին 100-ից մինչև 400 ռուբլի (բացառութիւնները քիչ են). միջին թուով մօտ 250—300. այս գումարի վրայ գիւղացիներն աւելացնում էին, պատերազմից առաջ, 100—150 ռուբլի և ուսուցիչներ էին հրաւիրում. սակայն այժմ այս նպաստը չէ բաւականանում, որովհետև 600-ից պակաս ռոճկով ոչ ոք պաշտօն չէ յանձն առնում և պակասով չի էլ կարելի ապրել (դեռ հարց է թէ արդեօք այդքանով էլ հնարաւո՞ր է ապրել)։ Բարեգործական Ընկերութիւնը պէտք է ստիպուած լինի նպաստի քանակն աւելացնել և 300—600 դարձնել, սակայն ո՞րտեղից, երբ իւր դպրոցական բիւջէն 30—34 հազար ռուբլի է։ Եթէ այդ գումարով փոխանակ 130 դպրոցի նպաստելու, միայն մի մասին նպաստ տայ՝ միւսները պէտք է փակուեն...։

Ա՜յս է մեր քաղաքակրթութիւնը, այսպէ՜ս է արտայայտւում մեր ազգային գիտակցութիւնը...։ Եթէ այսչափ է մեր արածը՝ ի զուր ենք խօսում արտաքին խոչընդոտների և ոտնձգութիւնների մասին. մ ե ն ք  կ ա ն գ ն ա ծ  ե ն ք  ծ խ ա կ ա ն  դ պ ր ո ց ն ե ր ի  փ ա կ մ ա ն  լ ո ւ ր ջ  վ տ ա ն գ ի  ա ռ ա ջ։ Մեր մտաւորականների պարտքն է ահազանգը խփել. մեր հասարակութեան, մանաւանդ հարուստ անհատների պարտքն է առատ նուէրներով մի խոշոր դպրոցական ֆոնդ կազմել։ Այդ է միակ ելքը։

Եթէ մենք մեր պարտքը չկատարենք, եթէ օտարանալու վտանգի առաջը չառնենք մայրենի լեզուով ուսուցանելու միջոցով՝ ապագայ սերունդները կանիծեն մեր յիշատակը։

Իսահակ Յարութիւնեան

## ԹԻՖԼԻՍՑԻ ԳԵՐԻՆԵՐԻ (ԳԵՐՄԱՆԻԱՅՈՒՄ) ԴԻՄՈՒՄԸ ՀԱՄԱՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԻՆ

Գերմանիա գերի ընկած Թիֆլիսցիք դիմել են իրենց հայրենակիցներին հետևեալ աղերսով.

Մենք, Թիֆլիսցի գերիներս, դիմում ենք մեր հարազատ և թանկագին Թիֆլիսի յանձնաժողովին խոնարհ խնդրանքով մտաբերել մեզ, պատերազմական գերիներիս, և օգնել գէթ վրահաս տօներին՝ Նոր Տարուն և Քրիստոսի Ծննդեան ու Մկրտութեան, ուղարկելով պարէն ծրարներով (ամենից աւելի ցանկալի էր չորացրած հաց, խողաճարպ, երշիկ (колбаса), ծխախոտ, բրնձէ կորկոտ, շաքար, իսկ զգեստ պէտք չէ)։ Յուսալով որ մեր խնդրանքը կը կատարուի՝ կանխաւ յայտնում ենք մեր շնորհակալիքը.

От Военнопленныхъ
Изъ Германіи лагеря
Штаргарда ип. пом.
Ун. о. Христафоръ Теръ-Семеновъ № 6564
Еф. Григорій Степанянцъ № 21896
Ун. о. Багратъ Мирвелянцъ № 21893
Ряд. Оганесъ Аракелянцъ № 21895
Ряд. Саркисъ Саркисянцъ
Ряд. Сено Бабоянцъ № 7027
Ряд. Александръ Айрапетянцъ № 8339
Ряд. Рубенъ Акопянцъ

Այս աղերսագիրն ուղարկուած է Կ. Հ. Բ. Ընկերութեան անունով, ուստի և Ընկերութիւնը յայտնում է իւր պատրաստակամութիւնը ստացուելիք ծրարները հասցնելու վերոյիշեալ Թիֆլիսցի գերիներին։

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

### Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Անցեալ տարուայ ընթացքում Խորհրդից նպաստուում էին սկզբում 123 դպրոց, իսկ երկրորդ կիսամեակում 136։

Ի նկատի առնելով դպրոցների վերահսկիչի անհրաժեշտութիւնը, Խորհուրդը որոշել է հրաւիրել այդ դպրոցների համար մի շրջիկ լիազոր, նշանակելով նրան տարեկան 2400 ռ. ռոճիկ և առանձին ուղեծախք։ Ընկերութիւնս 1915 թուի ընթացքում ունեցել է 77 ճիւղ, իսկ 1916-ի ընթացքում բացուել են նոր 13 ճիւղ և առ 1 յունուարի 1917 թ. Ընկերութեանս ճիւղերի թիւը հասնում է 90-ի։

Խորհուրդը կազմել և ուղարկել է դպրոցական հաստատութիւններին պ. Ն. Աբելեանի «Անահիտեան» գրադարաններից 14 հատ և պ. Կ. Շիրինեանի գրադարանից 5, ընդամենը 19 գրադարան։

Խորհուրդը ի նկատի ունենալով ներկայ կենսական և այլ իրերի թանգութիւնը, Ընկ. նպաստով պահուող դպրոցների ուսուցիչների վիճակը քիչ-շատ բարուոքելու նպատակով աւելացրել է նրանց ռոճիկները 10—50%, և 136 դպրոցների համար հանգերձ յաւելումով որոշել է տալ մի տարուայ ընթացքում 40,133 ռ. 50 կ.։

* * *

Կ. Հ. Բ. Ընկերութիւնը շնորհակալութեամբ ստացել է տիկին Մարգարիտ Աբեանից յօգուտ Ընկեր. ճաշարանի 100 ռ.։

## Գրադարան-ընթերցարան

Ընկերութեան Թիֆլիսի կենտրոնական գրադարանը անցեալ տարուան ընթացքում միջին թւով ամսական յաճախել են 5000 հոգի։

## Ճաշարան

Ընկերութեան աշակերտական ճաշարանը գործել է, ինչպէս ամեն տարի, 8 ամիս և ամենայն օր ստացել են ճաշ մօտաւորապէս 350 հոգի։

---

## ՀԱՅ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷ

Կենտրոնական Կոմիտէի գործունէութիւնը կարելի է բաժանել վերջին տարուան ընթացքում չորս մասի՝ ա) գաղթականական դպրոցներ, բ) որբանոցներ, գ) սննդատու կայաններ և դ) բժշկական օգնութիւն։

1) Դպրոցներ. Գաղթականական դպրոցները վարելու համար նշանակուած է մասնաճիւղ, նախագահութեամբ պ. Իսահակ Յարութիւնեանի. մինչև այժմ բացուած են 135 դպրոց 10,478 աշակերտներով և 308 ուսուցիչներով։ Բացի այս բացուած են նաև արհեստանոցներ՝ Թիֆլիսում իշխանուհի Մ. Թումանեանի ղեկավարութեամբ—կազմարարական, ծրարներ պատրաստելու, շորերի, գուլպայ գործելու, չուստեր կարելու. Դիլիջանում—կար ու ձևի, ատաղձագործութեան, չուստեր կարելու, աթոռներ գործելու, գորգագործութեան. Ախալքալաքում—չուստեր կարելու. Ալէքսանդրապոլում—չուստեր կարելու և ատաղձագործութեան։

2) Որբանոցներ. Գաղթականական որբանոցները կառավարելու համար կազմուած է նոյնպէս մի մասնաժողով, նախագահութեամբ պ. Ն. Աբելեանի. Հ. Կենտրոնական Կոմիտէն 1916 թ. ընթացքում ունեցել է 52 որբանոց 4,363 որբերով։

3) Սննդատու կայաններ. Յուլիսեան նահանջի ժամանակ Հ. Կ. Կ. բաց է արել գաղթի ճանապարհներին սննդատու կայաններ՝ պետական միջոցներով.

1) Խնուսում
2) Զավուրմայում
3) Արմութլիում
4) Դեգերման Դարայում
5) Տօղանում
6) Կաղզւանում
7) Ալաշկերտում

Ընդամենը ստացել են սնունդ 54,322 հոգի։

4) Բժշկական օգնութիւն.—Ալաշկերտում գործում էր մի հիւանդանոց ղեկավարութեամբ բժ. Կրեսսիի և մի թռուցիկ բժշկական խումբ Մանուշակեանի առաջնորդութեամբ. նոյն շըրջանում աշխատում էր նոյնպէս բժ. Օհանեանի խումբը։

---

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏԱԿԱՆ ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

Անցեալ տարուան ընթացքում կառավարութիւնը բաց թողեց 1.400.000 ռ. պահեստների համար և 30.000 ռ. բեռնատարքի (տրանսպորտի) համար։ Պահեստներ բացուել են՝ Երևան, Իգդիր, Նոր-Բայազէդ, Ղամարլու, Ալէքսանդրապոլ, Մեծ Ղարաքիլիսա, Ներքին Ախտա, Ղարանլուխ, Ելենովկա, Ջուլֆա, Գանձակ, Աննինօ, Ղարաչինար, Բարվանսարա, Դիլիջան, Աղստաֆա, Սարիղամիշ, Բաշքեօյ, Տիգոր, Աշտարակ, Արդահան, Ղուրդուղուլի, Դէլիբաբա, Գոմաձոր, Բայազէդ, Ալաշկերտ, Խնուս և Էրզրում, ընդամենը 32 պահեստ։ Օգտուել են ամսական մօտաւորապէս 164,000 հոգի։ Պահեստները բաց են թողել գաղթականներին ալիւր, շաքար, սապոն, նաւթ, գետնախնձոր և լուցկի։ Մթերքները ժամանակին տեղ հասցնելու համար կազմակերպուել է մի առանձին սայլաշարք (աբոզ) սայլերի. ֆուրգոնների և ինքնաշարժների (աւտոմոբիլների)։

---

# Քրոնիկոն

Գաղթականական գործերով զբաղուող հայկական կազմակերպութիւնների խորհրդակցութիւնը կը կայանայ Երևան կամ Թիֆլիս, հաւանօրէն փետրուարի սկզբին։

—

Դեկտեմբեր ամսուան ընթացքում բացուել են Կ. Հ. Բարեգ. Ընկերութեան հետևեալ ճիւղերը. Արտանուճ, Նախիջեան (Կարսի նահանգ), Սաչխերէթ, Տրապիզոն, Ղամարլու և Բէջղազլու։ Այս տարի բացուել է ընդամենը 13 նոր ճիւղ։ Որոշուած է բացել ճիւղեր նոյնպէս Էրզրումում և Վանում։

—

Դեկտեմբերի 26-ին կայացաւ ժողովրդական Տան Հայկական Դրամատիքական բաժանմունքի (սեկցիայի) ընդհանուր ժողովը, ուր ի միջի այլոց որոշուած է Թիֆլիսում բանալ դրամատիկ դասընթացքներ։

—

Դեկտեմբերի 28-ին կայացաւ Հայ Գրողների Ընկերութեան արտակարգ գրական երեկոյթը, որտեղ երիտասարդ գրող Կարէն Միքայէլեանը դասախօսեց «Որբերի աշխարհում» նիւթի մասին, որ մեծ տպաւորութիւն թողեց։

—

Թեմիս առաջնորդի հրաւէրով յունուարի 2-ին կայանալու է տեղական ծխական դպրոցների հոգաբարձուների խորհրդակցութիւն՝ ուսուցիչների դասագինն աւելացնելու խնդրով զբաղուելու համար։

—

Կովկ. զօրաբանակի գլխաւոր կառավարիչ գեներալ Վոլսկին թոյլատրել է Քաղաքների Միութեան Կովկ. բաժ. գլխաւոր Կոմիտէին, Բաքուի հիւանդանոցներից մէկին կից բաց անել սուրվարակիչ հիւանդութիւնների հիւանդանոց 400 մահճակալով։

—

Մի տարի դադարելուց յետոյ 1917 թ. վերսկսւում է «Պատանի» ալմանախի հրատարակութիւնը նախկին ծաւալով ու դիրքով։

—

Վրաց Բարեգործական ընկերութիւնը Զաքաթալայում բացել է ընկերութեան ճիւղ։

—

Պարոն Շիրվանզադէն գրել է նոր պիէս «Արհաւիրքի օրերին» վերնագրով, որը արդէն ներկայացուած է գրաքննիչին և կը ներկայացուի ներկայ թատերաշրջանին։

—

Ռուս դերասան Տաքենցսկին, որ ներկայիս զինուորական ծառայութեան մէջ է, արդէն թարգմանել է պ. Շիրվանզադէի «Նամուս» պիէսը։

—

Սիբիրի տաճկական զինուոր—հայ գերիների համար Հայկական Կենտրոնական Կոմիտէն որոշել է ուղարկել 1000 ռ. տօների առթիւ։

—

Թիֆլիսի քաղաքային դպրոցական յանձնաժողովը նախագծել է 1917 թուին բանալ 3 քաղաքային դպրոց (ռուսաց, հայոց և վրաց), որոնք բացուելու են սեպտեմբեր ամսից։

—

«Համբաւաբերի» հետևեալ համարը լոյս կը տեսնի ամսիս 15-ին։

դը» արեւելքով զունաւորւում է, եւ գունաւորւում է այնքան, որ չափով նա քաղում է իր ձեւական առաւելութիւնները։ Տեսէք, միեւնոյն բառերը՝ յաճախ կրկնուած, համարեա մի նուագածութեան տպաւորութիւն են առաջ բերում. օրինակ՝ հրոյ եւ լուսոյ զգացումը, որ անհարեկման զգացումն է, եւ ածականների հարըստութիւնը առաջացնում է յափրութիւնների քաղցրութիւնը կամ ոսկու շողշող շքեղութիւնը եւ պատկերին մարմնաւորածութեան (plastica) տալիս է երազին իրականութեան տպաւորութիւնը։ Լեզուի փարթամ պերճութիւն, յստակութիւն, որ գոյներով միայն արտադրելը կարելի է ֆ է ս տ օ ն ե ր ի համնում»։

«Կոնստան Զարեանի քերթուածը մեր ժամանակակից բանաստեղծութեան մի թանկագին վաւերագիր է իր արեւելեան ազգականների կողքին, մի բանաստեղծութիւն, որում կարծես մեր մտածողութեան նուրբ ազգողութիւնը հայ գրականութեան աւանդութիւնների պատկերաւոր հանդերձաւորումին փարւում, պարուրւում է» (accinde)։

«Ես համոզուած եմ, որ թարգմանելով այդ բանաստեղծութիւնը մեր լեզուով, ապարդիւն գործ չէ, որ կատարեցի, մանաւորապէս եթէ ընթերցողը բանաստեղծին ազնուական յոգնութեան մէջ ըմբռնէ այն յարամերձութիւնը մերոնց հոգիների, մեր աւանդութիւնների եւ ոգւոյն եւ այն ժողովուրդին, որ կապուած է մեզ հազար ու մի կապերով եւ որ այսօր տառապում է, ողբում է եւ իր արիւնթաթախ հսկումին մէջ յոյսն ունի ազատութիւն։

Արշակ Չէթվաճեան

## ՀԱՅԱՍՏԱՆՆ ՈՒ ՖՐԱՆՍԻԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԸ

«Հայաստանն ու պատերազմը» վերնագրով «Paris—Journal» ֆրանսիական օրաթերթը զետեղում է հետեւեալ յօդուածը.

«Այս պատերազմում տուժած բոլոր ժողովուրդներից, հայ ժողովուրդն անտարակոյս ամենածանր բեռը սփիսուեց տանել։

«Ոչ միայն կոտորածները, որոնք արեան հեղեղներ հոսեցրին նրա երկրում, այլ եւ կռիւների տարուբերումները նրա բնապաւառը դարձրին աւերակների կոյտ, որ աւելանալով զինակների դէզի վրայ՝ ամենադժբախտը դարձրին այդ ազգի հայրենիքը։

«Հայաստանը, որին արժանաւորապէս չի ճանաչում Ֆրանսացի հասարակութիւնը, արեւելքի այն ժողովուրդն է, որի մասին կարելի է ասել, թէ մի տեսակ շարունակութիւնն է կազմում Ֆրանսական մշակոյթի։

«Նրա արուեստներն ու գրականութիւնը, մանաւանդ ժամանակակիցը, դրոշմած են այն գերակայական (իդէալիստական), մաքուր գաղափարով, որը հիմքն է կազմում մեր ցեղի»։

Յիշելով մեր բանաստեղծութեան եւ Արշակ Զօպանեանի մասին, հեղինակը վերջացնում է իր յօդուածը հետեւեալ կերպով.

«Այս ժողովուրդն ինչ հրաշալի գործօն է Ֆրանսիայի տարածման համար արեւելքում, եւ «հայկական հարցը», որովհետեւ կայ այդպիսի մի հարց՝ չնայած մեր մի քանի կուշտացած թերթաւէրներին—խաղաղութեան վեհաժողովում մեր դիւանագէտների կողմից սեղանի վրայ պիտի դրուի իբր ամենակարեւոր մի խնդիր՝ ֆրանսական տեսակէտով։

«Իրօք. Հայաստանը մի լայն բացած դուռ է արեւելքում մեր ազդեցութեան համար։

«Իր աշխարհագրական դիրքով եւ իր ծաւալուն նկարագրով այս ազգը կոչուած է յետագայում խաղալու ամենամեծ դերը, որ կը ցայտէ առատ պտուղներ տալով դաշնակից դիւանագիտութեան, եւ առանձնապէս մեր դիւանագիտութեան։

«Նրա անկախութիւնը կը լինի մեր սեփական անկախութիւնն Արեւելքում եւ այս կէտում, արդէն գիտենք, Ֆրանսիան, Անգլիան ու Ռուսաստանը բոլորովին համաձայն են։

«Այն խաղում, որը պիտի անենք, աւելի միացած, քան երբէք, գիտենանք մեզ համար պահել այդ հրաշալի յենարանը։

Էմիլ Պինեօ «Le Radical»-ում գրում է «Հայոց դատը» վերնագրով. «հայ ազգն իր յոյսերը հիմնաւորում է մեր զէնքերի յաղթանակի վրայ, որը նկատում է իր իսկ աջողութիւնը»։

Հեղինակն ապա ընդգծում է այն եզակի եռանդը, որով հայերս անցեալում պահել ենք մեր ազգային անկախութիւնը, եւ թէ ինչպէս հաւատարիմ ենք մնացել մեր անդուսպ պահանջներին։

Յետոյ նա մի կարճառօտ տեսութիւն է անում մեր պատմութեան վրայ, առանձնապէս միջին դարերի, ուր ընդգծում է, որ ոչ արաբական ներխուժումի, ոչ սելջուկների եւ ոչ թիւրքերի, ոչ էլ պարսիկների դէմ երկարատեւ մաքառումի ժամանակ, մեր տառապանքի ոչ մի րոպէում, Հայաստանը չէ լքած իր ազգային հոգու միութեան գաղափարը, որը նա պահել է միշտ բարձր ու հաստատ, ինչպէս «մի անսասան ժայռ շղթայազերծուած կոհակների միջև»։

«Եւ սակայն, շարունակում է Պինեօն, բոլոր այս յաճախակի սարսափները—ահա թէ ինչն է ամենից հսկայականն այս ժողովրդում—ոչ մի համակերպութիւն, ոչ մի ինքնակամ սորկացում բարբարոսի օրէնքին ենթարկուելու։

«Կատարուած իրողութեան ենթարկուելու ամօթից, հայերը նախադասել են հազարներով ու հարիւր հազարներով աքսորուել եւ գնալ Ամերիկայի եւ Եւրոպայի հեռաւոր ճամբաներով, ինչպէս հնաւուրց մարգարէն ողբալով իրենց դժբախտ հայրենիքի մեծ թշուառութիւնն եւ աշխարհի ամեն կողմը հնչեցնելով նրա մարտիրոսագրութեան անսահման կոծը, որ շատ յաճախ անարձագանգ մնաց։

«Ինչպէս ասուած է, այս ժողովուրդը սպանուած է շատ անգամներ, եւ, ինչպէս միշտ, կը շարունակէ ապրել։

«Բայց այլեւս նրա անհուն ողբն անարձագանգ չի մնալ։

«Այս պատերազմը պէտք է ունենայ մի համաշխարհային պայման—յարութիւնը բոլոր ճնշուած հայրենիքների։ Եւ անցեալ բոլոր բռնապետութիւնները պիտի գան ջարդուելու այդ պատուարի դէմ՝ առանց վերականգնելու հնարաւորութեան։

«Պարլամենտում վերջերս խօսած իր ճառում հանրապետական կառավարութեան գլուխը կրկնեց Անգլիայի անունից Ասկուիթի ասած խօսքերը՝ ապագայ Եւրոպայի մեծ ռամկավարութիւնների մասին։ Նա խօսեց «միջազգային սանկցիաների» մասին, որոնք պիտի ճնշեն կոպիտ ուժի նոր բռնկումները։ Ուրեմն Հայաստանը կարող է աւելի հաստատապէս, քան երբէք, սպասել իր վերազարթման եւ իր նոր ճակատագրի ժամը։

«Նրա հազարաւոր զաւակների, որոնք ինքնաբերաբար մտան մեր դրօշի տակ, ամեն օր տուած գերագոյն զոհաբերութիւնն ապարդիւն չի անցնիլ։

«Մեր բանակներում կռուելով աշխարհի ազատութեան համար, նրանք գիտեն, որ կռւում են իրենց սեփական ազատութեան համար։

«Հայաստանի դատը մերն է եւ, ինչ վերաբերում է մեզ, մենք կարող ենք վստահեցնել նրան, թէ ֆրանսական հանրապետութիւնը չէ, որ կը մոռանայ համամարդկային համերաշխութեան այդ վսեմ ու հրամայական պարտքը»։

Ինչքան ոգեւորիչ է այդ խրախուսական խօսքերը լսել ֆրանսական մամուլից։ Ինչպէս գրագէտը ճիշտ կերպով նկատում է, կռուելով դաշնակից բանակներում՝ հայերը պայքարում են իրենց սեփական ազատութեան համար։

Եւ մենք երբէք չէինք կասկածել, որ ինքնաբերաբար միանալով ֆրանսական հանրապետութեան, ազատական Անգլիային եւ մեծ Ռուսաստանին, այս պետութիւնները հաշտութիւն կնքելու ժամանակ կը մոռանան Հայաստանի մեծ զոհաբերութիւնը։

Սուրէն

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ՏԱՃԿԱՀԱՅՈՑ ԿՈՏՈՐԱԾԻՑ

*Տպագրում ենք Թիֆլիսում Կարնից (Նոյեմբերի 16-ին գրուած) ստացուած մի մասնաւոր նամակը՝ հասկանալի պատճառով որոշ յապաւումներով։*

*Սիրելի եղբայրս.*

*Դժբաղդ ճակատագիրս զիս բերաւ՝ մէկ հատիկ որբուկիս հետ միասին կրկին այն տեղը՝ ուրկէ ելած էինք վեց հատ սիրելիներով՝ ուրախ, զուարթ, Սպանիական դղեակներ շինելով։ Անցեալ չարաշուք տարուայ ապրիլին էր երբ ամուսինս..... գաղափարը յղացաւ օդափոխութիւնը..... իր հայրենիքը անցընել, պայմանաւ որ՝ ըստ մեր յիմար կարծիքին՝ քիչ ատենէն Էրզրումը գրաւուէր ու մենք քէյֆով վերադառնայինք մեր երջանիկ հայրենիքը. ու գնացինք ալ։ Անցաւ հազիւ 1—2 շաբաթ՝ սկսան ձերբակալութիւնները թէ Էրզրում և թէ..... հարստահարութիւններ, թալան ու սպանութիւն՝ անկիւնները. աղին անդին՝ գիւղերն ու ճամբաները, մինչև որ կարգը եկաւ քաղաքին։ Մայիս 28-ին..... նորեկ չէ թէ գայմագամը տեղին նշանաւոր անձնաւորութիւններէն 15 հոգի խաբելով հրաւիրեց և իբրև պատանդ վար դրաւ զանոնք ու յայտարարեց որ յաջորդ օրն իսկ ամբողջ ժողովուրդը ճամբայ ելնէ դէպի Խարբերդ. իբրև թէ պատերազմական օրէնքը այդ կը պահանջէ եղեր. թէև դիմադրելու մասին խորհեցան ոմանք, բայց մեծամասնութիւնը չուզեց հակառակել ու համակերպելով սկսան գաղթել խումբ խումբ՝ ունեցած գոյքերը տեղւոյն տաճիկներուն պահ տալով. մենք ալ չորս զաւակներովս ելանք երկրորդ խումբին հետ։ Երեք օր քալեց թշուառ կարաւանը առանց իր ուղեւոյն՝ գլխիկոր ու տրտում, ենթակայ ժանտարմներու և նոյնիսկ ջորեպաններու քմահաճոյքին. չորրորդ առտուն, ա՜հ, այն սև առաւօտը.... քանի մը չեթեներ հարցաքննութեան պատրուակով եկան զատեցին տարին 20 հոգի աչքի ընկնող երիտասարդներն ու հարուստները, որոնց մէջ էր նաև իմ սիրելիս, դժբաղդ..... համբուրելով իր չորս ձագուկները գնաց նա՝ առանց այլևս վերադառնալու...։*

*Խելակորոյս վիճակի մէջ, անտէր ու զարիպ հասանք Բալու. հոն զատեցին նաև միւս..... այր-մարդիկը և 2 գիշեր հոն պահելէ յետոյ խումբը ճամբայ հանեցին Խարբերդ տանելու պատրուակով. երբ Մուրադ գետին մօտ հասանք, տեսանք յանկարծ կառավարական պաշտօնեաները, որոնք զինուած կսպասէին ու յանկարծ յարձակում գործելով կարաւանի վրայ սկսան անխնայ զարնել ու սպաննել այր մարդիկը և մեքենայօրէն մերկացնել ու ջուրը նետել. ճիշտ նոյն պահուն լեռնէն կարկուտի պէս վար թափեցան երկսեռ քիւրտ խուժանը. որոնք խիստ ճարպիկ կերպով կը թալնէին ինչ որ ունէինք. սաթըրն ու դանակը արդէն պատրաստ ունէին ընդդիմացողներու համար. գրչով անկարելի է նկարագրել այդ զարհուրելի տեսարանը, ահն ու սարսափը, լացն ու կոծը. հետևանքը այն եղաւ որ քիւրտին ու ժանդարմին ձեռքէն ազատողը գետին մէջ վերջ տուաւ իր կեանքին. սոսկալի էր տեսարանը, աղջիկներ, հարսներ կը նետուէին քիւրտին կին չըլլալու համար. մայրեր իրենց զաւակներն կը նետէին իրենց իսկ ձեռքով, որպէսզի իրենցմէ վերջը չը մնան ու թուրքի սրով մեռնին. հետևելով խելագարած ամբոխին՝ ես ալ յիմարացայ վայրկենապէս ու գետը նետեցի երկերկու տարեկան երկուորեակներս, իմ անմեղ հրեշտակներս.... ու ատով չըբաւականացայ, ես դարձայ իսկոյն որ մնացած զաւակներս 6 և 4 տարեկան..... ալ առնելով միասին նետուէի ու միանայի պզտիկներուս, յանկարծ գլխուս վրայ կանգնած գտայ պաշտօնեաներ, որոնք մտրակը ձեռքերնին գետեղերքէն հեռացուցին թշուառ կիները, հանդարտեցնելով զիրենք, որ իրենց համար վտանգ չկայ այլևս։ Մինչև այսօր ալ կանիծեմ ատոնք, որ պատճառ եղան իմ ապրելուս. այսչափ սիրելիներ կորսնցնելէ վերջ ինչ կարժէ իմ ապրելս. քանի որ կերած հացս միշտ արցունքոտ պիտի ըլլայ։—Բարեբաղդաբար զոյգերուս մէկը... ազատուեցաւ ջրէն այդ պաշտօնեաներուն ձեռքով, որոնք եղերքին մօտ տեսնելով իսկոյն բռնած էին. բայց ինչ օգուտ որ 5—6 ամիս վերջը մեռաւ նորէն, ինչպէս նաև.... սոսկալի զրկանքներու և թշուառութեան մէջ։ Հիմա ունիմ միայն 7—8 տարեկան..., որը ծանր հիւանդութիւններէ ազատեց Աստուած զիս բոլորովին անմխիթար չըձգելու համար։*

*Կիսամեռ կարաւանը 8—10 օր Բալու պահելէ յետոյ դրկուեցաւ Խարբերդ. հոն ալ մէկ օր պահեցին ու քշեցին դէպի Տիարպէքիր...*

*Շատ մեծ դժուարութիւններով յաջողեցայ հոս գալ, ուր բնաւ չէի յուսար գտնել քեռորդիս... և հօրքրորդիս... Ուրախ եմ ասոնց համար, առայժմ քեռանցս տուն կը մնամ. եթէ մեքենայ մը ձեռք ձգեմ նորէն կարելով պիտի զբաղիմ, նախ որովհետև եթէ ձեռքի զբաղում չունենամ կը խենթանամ, երկրորդ՝ քանի որ այս սև գիծը գծուեցաւ ճակատիս, ես պարտական եմ աշխատել անպայման զաւկիս համար, գոնէ քանի առողջ եմ. մեռնելէս յետոյ ալ հանգիստ եմ, քանի որ դու կաս, իմ թանկագին եղբայրս, զաւկիս դաստիարակութեան հոգը քեզի կը յանձնեմ... Վստահ եմ որ դու ալ ինձ չես մոռցած, թէև քիչ տարուայ մէջ շատ զաւակներու մայր լինելուս զբաղումներս շատ էին ու ես չէի կըրնար ժամանակ գտնել քեզ գրելու համար, թէև ձեր մասին ամենէն աւելի հետաքրքիր էի։—Ա՜խ, ներէ ինձի երկար ձեզ անհանգիստ ընելուս համար, «դէրդլի սէօյլէյէն օլուր» կըսեն, գիտեմ որ դու ալ պակաս դէրդլի չես. ա՜խ, հօրքուր ջան, երանի աչքերուդ որ հոս չէիր, բայց ինչ օգուտ, գիտեմ որ... կսկիծը կը բաւէ քեզի. դժբաղդ... ես անկէ բնաւ լուր չառի, բայց տեսնողներէ լսեցի որ... Խարբերդէն կէս ժամ հեռու եղող Խուլամանք ըսուած գիւղը եկեր է ողջ առողջ ու չըթալնուած կարաւանին հետ, այնտեղէն դէպի Տիարպէքիր ուղղուեր են, ալ չեմ գիտեր։ Ո՞ր մէկ սիրելիներուս համար լանք, չեմ գիտեր, երանի մեռած ըլլայի։*

*Ալ չեմ կրնար գրել, թէև տեսածիս $^{1}/_{100}$-րդն էր, որ գրեցի։ Ընդունեցէք կարօտի տաք համբոյրներս, հօրքուր ջան, սիրելի եղբայրս ու անուշիկ հարս. կը համբուրեմ ձագուկներդ, անուններով մանրամասն գրէ ինձի, կաղաչեմ։*

*Քո վշտալի քոյրը...*

---

## ՌՈՒՄԻՆԻԱՅԻ ՈՒ ԲՈՒԼԳԱՐԻԱՅԻ ՀԱՅՈՒԹԻՒՆԸ.

I

*Ներկայ ծանր օրերին պատերազմի արհաւիրքին ենթակայ եղաւ ոչ միայն մայր երկրի հայութիւնը, այլ և գաղութների այն հատուածները, որոնք վերջին տասնամեակներում գաղթել ու բնակութիւն էին հաստատել Բոլգարիայում ու Ռումինիայում։*

*Այս երկրների հայ գաղթականութեան պատմութիւնը շատ հին է, սակայն ամենավերջին ու ամենամեծ հոսանքը տեղի է ունեցել 1896 թ., իբրև հետևանք Աբդուլ Համիդի գաժան վարչութեան։ Կոտորածների այդ սարսափելի օրերին Պոլսի ու շրջակայ հայութեան մի խոշոր թիւ փրկութեան տեղ է որոնում Բոլգարիայում։ Դրանց հետևում են փախստականների այլ և այլ խմբեր, որոնք երկրի մերձաւոր վայրերից հաւաքուելով Սև ծովի ափերը, նաւով սկզբում մեկնում են Ռուսիա ու Ռումինիա, բայց ընդունելութիւն չը գտնելով, նորից դիմում են Բոլգարիա, արժանանալով սիրալիր հիւրընկալութեան։ Կարճ ժամանակի ընթացքում հայերի թիւը բաւական մեծանում է նոր գաղթական-*

ներով և նրանք կարողանում են ազատ շունչ առնել բարեկամ երկրում։

Դժբախտաբար Բոլգարիայի տնտեսական պայմանները նըպաստաւոր չեն հանդիսանում գաղթական հայութեան համար, ուստի կամայ-ակամայ նրանք ստիպուած են լինում Սև ծովի ափերից ու Թրակիայի մերձաւոր շրջաններից հեռանալ դէպի երկրի կենտրոնները՝ տարածուելով մանաւորապէս Դանուբի ափերին, մինչև որ նպաստաւոր պայմանների մէջ կարողանում են անցնել գետը և բնակութիւն հաստատել Ռումինիայում։

Գաղթականութեան այդ օրերից անցնում է ուղիղ քսան տարի։ Մի հատուած բնակութիւն է հաստատում Բոլգարիայում, միւսը Ռումանիայում, ժամանակի ընթացքում ձեռք բերելով տնտեսական ապահովութիւն, այլ և ոմանք տեղ-տեղ մեծ հարստութիւն։ Միաժամանակ աճում է և նրանց թիւը, այնպէս որ ներկայ պատերազմի նախօրեակին նրանց թիւը հաշւում էր Բոլգարիայում 14 հազար, իսկ Ռումանիայում մօտ 20 հազար։ Բոլգարիայում տեղաւորւում են գլխաւորապէս Վառնայում, Շումլայում, Ռուսչուկում, Ֆիլիպպոպոլում, Սոֆիայում և մանր-մունր վայրերում, իսկ Ռումանիայում տեղաւորւում են գլխաւորապէս Բուքրէշում, Կոստանցայում, Սիլիստրայում, Բազարջիկում, Գալացում, Ֆոտոշանում և շատ այլ վայրերում։

Այստեղ պէտք է աւելացնել, որ վերոյիշեալ այս վայրերում, այսինքն Ռումինիայում ու Բոլգարիայում, այդ գաղթականութիւնից առաջ ևս հայութիւն կար, սակայն նրանց մեծագոյն մասը վաղուց արդէն օտարացել ու հայութիւնից գատուել էր, այնպէս որ այս գաղթականութեան մասին խօսելիս, նրանք հաշւի չեն առնւում։ Այսօր իսկ նրանք մեծ մասով մնացին գատուած գաղթական հայութիւնից և նոյն իսկ որոշ չափով խորդ աչքով էին նայում վերջիններիս կրած նոր տառապանքին ու խուճապին։ Հին ու նոր գաղթականութեան միջև եղած այս յարաբերութիւնն ունի իր կարևոր պատմութիւնը, սակայն այդ մասին չէ որ այժմ պիտի խօսենք։ Այսօր մենք կը կամենայինք տալ այդ գաղթականութեան կրած նոր աւերների հակիրճ պատմութիւնը.— ինչ ապրեց ու ինչ կրեց նա այս պատերազմի ընթացքում։

II

ԲՈԼԳԱՐԻԱՅՈՒՄ

Ներկայ պատերազմի մասին դատելիս հայ քաղաքագէտները, մամուլն ու կազմակերպութիւնները այն համոզմունքին էին, որ Բոլգարիան կերթայ Ռուսաստանի հետ։ Այդպէս էին համոզուած, որովհետև մենք այդպէս էինք ցանկանում, որովհետև իրերի այդպիսի դասաւորութիւնը շահաւէտ կը լինէր հայերիս համար և վերջապէս որովհետև դաշնակիցների մամուլը հրապարակով այդ էր ներազդում մեզ՝ միամիտներիս։

Դիւանագիտութիւնը սակայն այլ բան էր խորհում. նա ունէր այլ հաշիւներ և գիտէր, որ Բոլգարիան Ռուսաստանին ներհակ ընթացք է բռնելու։ Մինչև իսկ հեռատես Սազոնովը Դումայի զեկուցման մէջ դեմոնստրատիւ լռութեամբ անցաւ, աւելորդ համարելով Բոլգարիայի մասին խօսելը։ Մնում էր մի ընթացք միայն. եթէ չեն կարող փրկել Բոլգարիային Գերմանիայի միութիւնից, գոնէ համոզեն նրան չէզոք մնալու։

Եւ մինչդեռ հայ քաղաքագէտները մնում էին համոզուած իրենց սխալ հաշիւներով, հայ ժողովուրդն ընդհակառակը աւելի ու աւելի թերահաւատ էր դառնում Բոլգարիայի քաղաքական ընթացքին և հենց սկզբից միջոցներ էր խորհում հեռանալու Բոլգարիայից։

Հայ ժողովրդի այս երկիւղը հիմնաւորուած էր կրկնակի պատճառաբանութեամբ։ Ամենից առաջ հայ մարդը չէր կարող բարեկամ մնալ մի պետութեան, որ կամենում է հովանաւոր հանդիսանալ Թիւրքիային, հայ ժողովրդի այդ դարևոր թշնամուն։ Երկրորդ՝ հայ ժողովուրդը չէր կամենայ զինուորագրուել մի պետութեան, որ գնում է կռուելու Թուրքի հետ կողք-կողքի։

Եւ այս պարագաներում սկսուեց ներքին հակամարտութիւն, մի կողմից հայ կազմակերպութիւնների Բալկանեան ներկայացուցիչները կամենում էին համոզել հայերին՝ հանգիստ մնալու իրենց տեղը, որի համար և քարոզում, և կոչեր էին հրատարակում. միւս կողմից հայ ժողովուրդը գաղտնագող միջոցներ էր փնտռում հեռանալու աւելի ապահով երկիր, նպատակ դնելով գլխաւորապէս Ռուսաստանը, ուր հայանպաստ շարժում կար սկըսուած։ Այս հանգամանքների վրայ աւելանում է և կամաւորական խմբերի մէջ մտնելու հայրենասիրական տենչը։

Այնպէս որ Բոլգարիայի հայ երիտասարդութիւնը փոքրիկ խմբերով սկսում է Կովկաս մեկնել, սակաւաթիւ դէպքերում իրենց հետ տանելով և հայ ընտանիքներ։

Դժբախտաբար այս գաղթը երկար չէ տեւում, որովհետև հայ կազմակերպութիւնների անտակտ գործունէութիւնը հակառակ է հանդիսանում դաշնակից պետութիւնների հայասէր տրամադրութեան, ուստի և Բոլգարիայից մեկնող կամաւորական խմբերին արգելւում է Ռուսիա մտնել։

Ինքը՝ բոլգար կառավարութիւնը ևս հաշտ աչքով չի նայում հայերի փախուստին։ Ճիշտ է չեն ձեռնարկւում բացարձակ միջոցներ, սակայն սահմանն անցնելը աշխատում են ամեն տեսակ դժուարութիւնների ու խստութիւնների ենթարկել։ Այնպէս որ այնուհետև Բոլգարիայից կարողանում են դուրս գալ միմիայն նրանք, որոնք հնար են ունենում անցագրային բոլոր արգելքները յաղթել։ Եւ բնականաբար գաղթը Բոլգարիայից ընդունում է մասնակի ընթացք։

Անցնում են ամիսներ. հաղորդակցութիւնը Ռուսաստանի հետ բարելաււում է և կապ է հաստատւում Կովկասի հետ, որից յետոյ հակակամաւորական պրոպագանդը փոխւում է նպաստաւոր շարժման։ Սկսւում է կամաւորական նոր հոսանք. սրանց միանում են և Բոլգարիայի քաղաքականութեան թերահաւատ վերաբերուողների խմբեր, որոնք բոլորն էլ հաւաքւում են Ռուսչուք՝ սպասելու սահմանն անցնելու պատեհ հանգամանքի։ Հարկ է լինում հեռագրել Օդեսայի զինուորական վարչութեան, որը կարգադրում է Դանուբեան նաւեր դնել հայ կամաւորների տրամադրութեան տակ, առանց Ռումինիա հանդիպելու տեղափոխելով Ռէնի։ Այս գաղթը տեւում է շատ կարճ. շուտով գոցւում են Բոլգարիայի Դանուբեան բոլոր սահմանները, գոցւում են և Դոբրուջայի սահմանները։

(Կը շարունակուի) Յ. Ճերմակ

# Գ Ե Ղ Ա Ր Ո Ւ Ե Ս Տ

## ,,ԱՐԵԱՆ ԷՋԵՐ" գրքից

Արդա՞ր էք, թէ՞ անիրաւ, ո՞վ է կարող ձեզ դատել.
Դուք, որ պարկւում էք հիմա մի խոր փոսում, մի դիրքում.
Դուք, որ տենչում էք միայն — յօշոտել ու ծւատել,
Եւ երազով արիւնոտ հարբած՝ ոճիր օրհներգում։

Դուք, որ մոռցել էք սիրոյ պատգամները սրբազան՝
Ես իմ սիրող շուրթերով՝ ինչպէ՞ս նզովք ձեզ ասեմ.
Ինչպէ՞ս ասեմ — վատ էք դուք, չար էք, վայրագ ու գազան,
Կամ թէ ինչպէ՞ս ես գովեմ թռիչքները ձեր վսեմ։

Իսկ նրանք, որ դէմուդէմ նոյն խենթութեամբ ու բոցով,
Խոյանում են ձեր վրայ, հերոսնե՛ր իմ անանուն...

*Չէ՞, նրանց էլ յետևում կայ թախիծի խորունկ ծով*
*Եւ սպասում են նրանց անձկութիւնով մեծ, անհուն։*

*Ախ, ես ունեմ ձեզ համար մի հատ սրտի սուր կսկիծ,*
*Եւ մի կսկիծն ինչ՝ անի այսքան ցաւին, անկումին...*
*Ո՛վ կսթափուի իմ ճիչից, իմ կիսախեղդ թոյլ խօսքից.*
*Ես ինչ անեմ մեն-մենակ սոսկումնալի այս ժամին։*

*Գ. Բեալաշեան*

---

# Գրականութիւն

## ՄԵՐ ՀԻՆ, ՄԵՐ ՍԻՐԵԼԻ ՏՈՒՆ

*Երբ արևը մահուան երգեր հծծալով հորիզոնի կամարներն ի վար իջաւ և պաղ, անոյշ հովիկը ծափ տալով չարաճճի աղջկայ մը պէս թռվռալ սկսեց, հնձուորները խումբ-խումբ գիւղ դարձան հեռաւոր արտերէն, աշխատանքի երգերը երգելով և կռնակնուն ցորենի կամ կանաչ խոտի խուրձերը շալկած։*

*Հնձուորներէն յետոյ գիւղին ճամբան բռնեց միջահասակ, դեղնած դիմագիծերով կին մը, ութնամեայ, կապտաչուին մանկան ձեռքէն բռնած. անոնք ալ կը դառնային դաշտային աշխատանքէ և իրենց դէմքին վրայ կ'երևնար յոգնութեան արտայայտութիւնը։*

*Կնոջ հագուստը կը տարբերէր այդ գիւղի կանանց հագուստէն, թէ իր ձևով և թէ գոյնովը. անիկայ գլխին ունէր հնամաշ եազմայ մը և մարմնին վրայ զպուն մը հագած էր, որու վրայ թիւրքական ճաշակով նախշուն ծաղկանկարներ կը նշմարուէին։*

*Հարթավայրը՝ ուրկէ կ'անցնէին անոնք, մարդահասակ, կանանչ մարգերով կը փռուէր, որոնց արանքներէն վճիտ առուակներն կը զլզլային, ուրախ երգեր դաշնակելով օդին մէջ։ Շրջապատը հանդարտ էր, իրիկուայ դեղնած լոյսերով և ծիրանի գոյներով գեղեցկացած. փոքրիկ, մանիշակաթև թիթեռնիկները կը թևածէին ծաղկէ-ծաղիկ և տրտմաթաթաւ երազ մը կը ծաւալէր մթնոլորտին մէջ, իր թեթև հովհարին ներքև թմրեցնելով ծաղիկներն ու խոտերը։ Փոքրիկ Վաղինակը կը վազվռտէր շարունակ թիթեռնիկներուն ետևէն, որոնցմէ մին սլացաւ այն բլրակին ի վեր, որ կը բարձրանար ճանապարհի եզերքին և որու գագաթը գորգուած էր կանանչ խոտերով։*

*Երբ Վաղինակը բլրակին կատարն ելաւ, անոր առջևը պատկերացաւ ընդարձակ դաշտավայրը. Նա իր մանկական տեսողութիւնը յառեց հեռուն հորիզոնի բարձրութիւնն ի վեր հասակնին քաշած ձիւնապատ լեռներուն, որոնցմէ մին, ամենէն բարձր մասնաւորապէս գրաւեց տղու ուշադրութիւնը։ Երեխան վաղուց ի վեր մոռցուած պատկեր մը յիշողի փութկոտութեամբ, աշխուժ կերպով դարձաւ դէպի մայրը, որ կսպասէր իրեն բլրակի ստորոտին և ըսաւ.*

*—Մարէ, հրէն էն սարը, էն ձիւնոտ գլխով, բանձր սարը...։*

*Մայրը տղուն ուղղութիւնը տեսնելով ինքն էլ բարձրացաւ անոր քով և գլուխը ամպերուն մէջ խրած՝ հսկայ սարն տեսաւ, որ տղեկը կը ցուցնէր իրեն։*

*—Մենք էն սարի փէշովը անցանք, չէ՞, մարէ։*

*—Այո, բալաս, էն սարի կողքովը անցանք մենք, մրմնջաց մայրը ու լուռ մնաց. անոր դէմքին վրայ գծագրուեցաւ յանկարծ տխրութեան թանձր ամպ մը, թռուած շրթունքներն սկսան դողդղալ, հողմահալած տերևներու նման և աչքերուն կոպերը թրջուեցան արցունքի հոսումէն։*

*Երեխան նկատեց մօր դէմքին փոփոխութիւնը և այլևս չը խօսեց, ամփոփուելով մէկ միւսէն աւելի թախծոտ յուշերու մէջ, որ կարթննային աստիճանաբար, փետտուած փունջի մը պէս։ Իրիկուայ այդ տրտմաթաթաւ պահուն անոնք երկուքն ալ համակուեր էին միևնոյն զգայնութեամբ, որ այնքան դառն և սուր կերպով կը ցնցէր իրենց հոգիները. անոնք կարծես կը վախնային իրարու լռութիւնն խզելէ, որովհետև միևնոյն նիւթին շուրջ կը մտորէր այդ վարկեանին երկուքին ալ գիտակցութիւնը։*

*«Այո, Վաղինակ շատ լաւ կը յիշէր. այդ այն սարն էր, որու առջևէն անցան իրենք տարի մ'առաջ. ինչքան երկայն և անծայրածիր էր այդ ճանապարհը. ատամնաձև, հսկայ ժայռերու և անդնդախոր ձորերու մէջ գետեղուած. որքան բազմաթիւ էին իրենք գզգզուած, փոշէթաթախ հագուստներով. ոտներնին բոբիկ, որոնց մսին վրայ արեան կարմիր բիծեր կը նշմարուէին. իր երևակայութեան մէջը վառ էր, թէ ինչպէս յոգնութիւնէն կը գալարուէր ինքը, թուքը բերնին մէջ կը չորնար և ջուրն ընկած հաւու ճուտի մը պէս կը դողդղար, կը կախուէր մօր փէշերէն ու շարունակ առաջ կը վազէին հևասպառ ու շնչակտուր։*

*Բայց այդ բոլոր յուշերու մէջէն յանկարծ շատ սիրելի բան մը արթնցաւ. իր ծերունի հօր պատկերն էր այդ, հիւանդ ու արիւնաքամ, որ հազիւ կը հետևէր իրենց դողդոջուն քայլերով. բայց վերջ ի վերջոյ մնաց կէս ճամբան, փոշիներու մէջ ընկած... ալ անկէ յետոյ բան մը չը կրցաւ յիշել ինքը, որովհետև աչքերը լեցուեցան տխրութեան յորդ արցունքներով։*

*—Մարէ, հայրիկը մնաց կէս ճամբան, հա՞, էն ձիւնոտ սարին տակ...։*

*Այս անակնկալ հարցը սուրի մը պէս ցցուեց մօր սիրտը. ճիշտ միևնոյն խոհերուն մէջն էր ինքը, և իր որդին այդ սարսափելի յիշողութիւնն աւելի բարձրագոչ և ուժգին կը հնչեցնէր անոր լռութեանը։*

*—Էլ չըպիտի՞ դառնայ հայրիկը, հա... սա՛, մարէ, խուրբան քեզի...։*

*Խեղճ կինը շփոթուեցաւ, տղուն իրեն յառած հայեացքէն, որուն մէջ կը կարդացուէր անոր մանկական հոգու ծանր տառապանքը։*

*—Յետ դառնանք, որդի,*

*—Ո՛չ, մնա՛նք, էստեղ շատ խօրոտ ի, ա՛յ էն սարը, ինոր քամակն մնաց հայրիկը, ինոր յետևէն եկանք մենք, թողնելով մեր գիւղը, մեր օճախը...։*

*«Մեր գիւղը, մեր օճախը», ահա՛ յիշողութիւններու նոր և աւելի ուժգին շարքեր, որ այդ երկու տողերն արթնցուցին իր մէջ և տղու հոգին, բլուրի կանանչաւուն գագաթէն, նոյն բոպէին թև առաւ, սլացաւ ալիհեր լեռան միւս կողմը, կապուտակ ծովակին ափը շինուած իրենց գիւղը։ Օ՜, ինչքան շէն էր ան, փարթամ ծառերու և ծաղիկներու մէջ շինուած. հապա իրենց գետնայարկ, փոքրիկ խրճիթը, ուր իրեն հետ կողք-կողքի կապրէին երկայնամազ ոչխարները, չարաճճի ուլերը, հաւու ճուտերը և այն ամենը, որ անքակտելի կերպով կապուած էին իրեն հետ։ Օ՜, որքան կուզէր ապրել հայրենի օջախին քաղցրութիւնը, թաւալիլ անոր կանանչներուն վրայ, վճիտ ջրերու եզերքին, ծծել մաքիներու կաթնաառատ ծծերէն, մածուն յարող ծծումին բերանը լիզել, թոնիրի շրթան նստել և թազա հացը ծամել և կամ ախոռին մէջ թամբային վրայ երկննալ անասուններու շնչառութիւնէն գոյացած դաղջ օդը շնչելու համար... Այդ կեանքին կարօտը կայրէր զինքը, որովհետև հիմակուան տնակը ցուրտ էր, անճրագ և անկրակ, անկաթ և անձու, անծանօթ մարդկանց ցուրտ հայեացքներուն ենթակայ։*

*Եւ այս բոլորէն յետոյ՝ երեխան վարկեան մը մոռցաւ ճանապարհին մեռած հօր սիրելի պատկերը, իրենց քաշած զրկանքները ու տառապանքը և հայրենի օջախին կարօտը միայն սկսաւ վառուիլ իր երակներուն մէջ։ Հայրենի հողէն հեռու լինելու գիտակցութիւնը, այնքան դառն և այնքան դժնդակ եկաւ իրեն, որ քանդուած բոյնի փլատակներուն վրայ, մորմոքող թռչունի մը նման, հեկեկալ սկսաւ դառնօրէն։*

—Ա՜խ, մարէ, ինչ լաւ էր մեր տունը, մեր մաքին, մեր պզտիկ ուլերը, մեր կաթ, մեր մածուն, սերն ու կարագը, երթանք էնտեղը ու էնտեղը մեռնինք...։

Ութնամեայ տղուն սրտէն փրթած այս աղեկտուր տենչը, խոր կերպով համակեց մօր վշտաթաթախ հոգին և նա ամեն ինչ մոռցած, արտասուախառն աչքերով մօտեցաւ գրկեց իր խարտեաշ տղեկին ու մրմնջաց.

—Կերթանք, բալաս, խուրբան քեզ, մի օր կերթանք մեր օջաղ, մեր հին, սիրելի տունը...։

Այս խօսքերը մրմնջալէն յետոյ, մօրն ու տղուն հայեացքներն ակամայ դարձան դէպի այն հեռաւոր, փոշեծածկ ճանապարհը, որ օձի մը նման կոլորուէր հեռու, շատ հեռու։

Իսկ ալեհեր Մասիսը, վերջալոյսի մեռնող ցոլքերէն հրկիզուած իր հսկայ, ցաւատանջ գլուխն կը խոնարհէր ու ինքն ալ կուլար՝ ունկնդրելով բնաւեր և հալածական ցեղին այդ ցաւատանջ, այդ անմեռ մրմունջները...։

Ծ. Թորգոմեան

---

## ԳՐԻԳՈՐ ԶՕՀՐԱՊ*)

(Գրական ուսումնասիրութիւն)

### ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Այս ուսումնասիրութեան մէջ կը խօսուի միայն վիպագիր Գրիգոր Զօհրապի մասին։

Ճիշտ է, մենք համոզուած ենք, որ մեր արևմտահայ անուանի հեղինակը շատ ուշագրաւ է եղել նաև իբր փաստաբան, իբր հրապարակախօս, իբր հռետոր, իբր քննադատ, իբր օսմանեան պարլամենտի անդամ և նաև իբր առհասարակ անձնաւորութիւն, բայց այս շահեկան խնդիրների լուսաբանութիւնը կը պահանջէր, ճշգրտութեան համար, գնալ Պոլիս և տեղնուտեղը ուսումնասիրել, միևնոյն միջավայրում, ծանօթների անմիջական տեղեկութիւններից օգտուելով, միաժամանակ տեսնելով Զօհրապի սիրած վայրերը, բնակարանը, ճաշակը, քրքրելով նոյնպէս այն բոլոր պարբերականները, որոնց մէջ հանգուցեալը ցիրուցան թողել է իր մտքի զանազան արտադրութիւնները։ Պոլսում միայն կարելի է իսկապէս ճանաչել Զօհրապի անձնաւորութիւնը, ինչպէս նաև նրա հասարակական գործունէութիւնը։ Այս հարցերի քննութիւնը կարող էր նիւթ դառնալ մի առանձին շատ արժէքաւոր հատորի, որի մէջ պոլսահայոց ամբողջ կեանքը գրեթէ՝ XIX դարի վերջին քառորդից սկսած մինչև մեր օրերը՝ կանդրադառնար իր այլեայլ փուլերով։

Ի հարկէ մի այդպիսի լաւ ուսումնասիրութիւն մեծապէս կը պարզաբանէր նաև վիպագիր Զօհրապի հետ առնչութիւն ունեցող որոշ կարևոր խնդիրներ, այո, բայց նմանօրինակ մի աշխատութիւն հնարաւոր կը լինի միայն ապագայում, որովհետև համաշխարհային պատերազմը փակել է այսօր նաև Պոլսի դռները։ Ուստի առ այժմ մենք կը բաւականանանք վիպագիր Զօհրապով և նկատի կառնենք նրա այն երեք հատորները, որոնք վերնագրուած են Խղճմտանքի ձայներ, Կեանքը ինչպէս որ է, և Լուռ ցաւեր։

*) «Համբաւաբեր»-ի առաջին տարուայ № 1-ում խոստացել էինք Գ. Զօհրապի մասին մի յատուկ ուսումնասիրութիւն տալ մեր ընթերցողներին։ Ահա այդ յօդուածն է, որ այսօրուանից տպագրւում է։

Խմբագր.

## ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆԸ

Յիշեալ գրքերի մէջ ամփոփուած պատմուածքների հեղինակը պատկանում է 80-ական և 90-ական թուականների մտաւորականութեան, իսկ այդ մտաւորականութիւնը, լինելով սուլթան Համիդի բարբարոս ռէժիմին ենթակայ, սաստիկ ճնշուած է և տըխուր։ Այն ինչ նախորդ սերունդը ռոմանտիք էր, սահմանադրական, քնարերգու, ոգևորուող, ճառերի ու հանդէսների սերունդ։

Բոլորիս յայտնի է, որ Բերլինի դաշնադրութեան 61-րդ յօդուածը չը տուեց մեզ հայկական նահանգների համար խոստացուած բարենորոգումները։ Այդ դեռ հերիք չէ. տաճիկ կառավարութեան խստութիւնները շատ աւելի սաստկացան հայերի դէմ, որովհետև վերջիններս նոյնպէս, 1878 թուականի ռուս-թուրքական պատերազմից յետոյ, համարուեցին անվստահելի տարր։ Հայաստան բառի գործածութիւնն անգամ արգելուեց. գրաքննութիւնը դարձաւ ինկվիզիցիայի պէս մի զարհուրելի բան։ Կողոպուտ, բռնութ, հալածանք սովորական երևոյթներ դարձան մեր գաւառներում, ուր քիւրդերի և թուրքերի արարքները մնում էին անպատիժ։ Իսկ եւրոպացի պետութիւնները չը տեսնելու էին տալիս այդ բոլորը, որովհետև նրանցից իւրաքանչիւրը իւր մասնաւոր շահերն ունենալով Տաճկաստանում՝ չէր ցանկանում ինչ որ հայկական հարցի համար ընդհարուել Բարձրագոյն Դրան հետ և հետևաբար մի այլ պետութեան ազդեցութեանը նպաստել՝ ի վնաս իւր սեփական հաշիւների։ Սուլթանն ի հարկէ շատ լաւ գիտէր եւրոպական դիւանագէտների մրցումը, որ մի տեսակ քաջալերում էր կարծես նրա քմահաճոյքները, և հայերի վիճակը վատթարանում էր օրից օր։

Այսպիսով մեր մտաւորականութիւնը տեսաւ չարաչար ջախջախումը իւր քաղաքական երազների, որոնք մի րոպէ թուացել էին իրականանալիս. տեսաւ Աբդիւլ Համիդի արհամարհանքը քրիստոնեայ տէրութիւնների միջամտութեանց նկատմամբ, ինչպէս և վերջիններիս իրական անզօրութիւնը հայկական հարցում։

Բնականաբար մեր քաղաքական ռոմանտիք հայեացքներն էլ սկսեցին կամաց կամաց, ցաւատանջ կերպով տեղի տալ մի նոր ըմբռնումի առաջ, որը աւելի համապատասխան էր անմխիթար իրականութեանը։ Այդ նոր ըմբռնողութիւնն էլ, անշուշտ, սկզբնական շրջանում դեռ էլի պարունակում էր շատ ցնորական տարրեր։ Բայց և այնպէս մեր ժողովրդի գոնէ առաջաւոր մասի համար հայկական հարցի լուծումը կորցրեց իւր նախկին հեշտ վճռուելիք բնոյթը, դարձաւ արևելեան կնճռոտ խնդրի հարիւրաւոր հանգոյցներից մէկը, որը քանդելու համար պէտք էր բազմաթիւ այլ հանգոյցներ ևս զուգընթացօրէն քանդել մի այնպիսի բարեպատեհ և զգոյշ քաղաքականութեամբ, որը գրեթէ անհնար էր դառնում հակադիր ուժերի այն բորբոքութեան մէջ, ուր տասնեակ ազգերի շահերը բախւում էին իրար, ասես ճակատագրական մշտականութեամբ։

Քաղաքական կեանքի այդ վիճակը նպաստաւոր էր գրական ռէալիզմի սկզբնաւորութեան համար։

Միւս կողմից՝ Խրիմեան Հայրիկ, Գ. Սրուանձտեան և ուրիշներ պոլսեցոց ուշադրութիւնը հրաւիրել էին գաւառացիների վըրայ։ Սրանց թշուառութիւնը տեսնելու համար կարիք չը կար անպատճառ գնալու Հայաստանի խուլ անկիւնները, որովհետև հէնց մայրաքաղաքում էլ շատ կային պանդուխտ հայեր, որոնք բեռնակրութեամբ էին պարապում. առաւօտից երեկոյ նաւահանգստում կամ մեծ վաճառատների պահեստներում ծանր հակերի տակ քրտինք թափելով՝ նրանք կեանք էին մաշում, որ, ինչ է, մի քանի զուրուշ աշխատեն և հայրենիք ուղարկելով՝ ամոքեն իրենց ընտանիքների կարիքները։ Այդ խեղճ ու կրակ մարդկանցից հարիւրաւորներ ամեն տարի մեռնում էին խաների անկիւններում, անտէր, անտիրական։ Նոր պանդուխտներ էին գալիս, նրանք էլ մեռնում էին կամ հիւծւում օտարութեան մէջ, իսկ հեռու՝ ծո-

վերից ու լեռներից դէնը՝ քայքայւում էին նրանց օջախները*)։

Այժմ, քաղաքական հիասթափումից յետոյ, Պոլսի մտաւորականներն սկսեցին խօսք տանել ողբերգական վիճակը հայ պանդուխտների, որոնց հայրենի ռամիկ երգերը, աւանդութիւնները, նիստ ու կացը մի կոշտ ու կոպիտ, բայց հարազատ, առողջ ու իրական բան ունէին, որ այնքան տարբեր էր մայրաքաղաքի հայոց ռոմանտիկ գրականութիւնից՝ լինի սեփական, թէ թարգմանական։

Արդէն այդ ժամանակ ռոմանտիզմը Եւրոպայում էլ տեղի էր տուել իրապաշտական ուղղութեան առջև. ուստի Ֆրանսան՝ արևմտահայերի այդ դաստիարակը՝ եթէ երբեմն իւր ռոմանտիկ հեղինակներով էր հրապուրել պոլսահայերին, այժմ էլ սկսել էր իւր ռէալիստ գրողների ստեղծագործութիւնները դարձնել ընթերցանութեան նիւթ։

Յիշատակենք նաև, որ 80-ական թուականներից սկսած նըկատւում է մի տեսակ մերձեցում ռուսահայերի և տաճկահայերի միջև։ Այդ շարժման պարագլուխներն էին Գր. Արծրունին և Ար. Արփիարեանը, որոնք հրապարակախօսութեան միջոցով հայութեան երկու հատուածների միջև առաջ բերին որոշ շփում, որը դարձեալ նպաստելու էր արևմտահայ ռէալիզմին, քանի որ թէ Արծրունին և թէ առ հասարակ ռուսահայ գրականութիւնը իրական ձգտումներ ունէին, և հէնց այդ ձգտումներն էլ հակադրւում էին տաճկահայ հեղինակների ռոմանտիկ ու անհարազատ ոգուն**)։

Ահաւասիկ այս հանգամանքներում էր, որ 1884 թուականից Պոլսում յաջորդաբար սկսեցին լոյս տեսնել Արևելք, Մասիս (շաբաթաթերթ) և յետոյ էլ Հայրենիք, երեքն էլ ռէալիստ գրականութեան կողմնակից պարբերականներ, որոնց շուրջը հաւաքուած երիտասարդ ուժերից մէկն էլ Գր. Զօհրապն էր։

Նրա նորավէպերը իրենց ժամանակի արտայայտութիւններն են, այս պատճառով էլ պարունակում են այնպիսի նիւթեր, որ հնարաւոր էր տպագրել գրաքննիչի դաժան հսկողութեան ներքոյ, այսինքն կենցաղական ու սիրային դէպքերի անվնաս պատկերացումներ։ Ուստի զարմանալու չէ, որ Զօհրապի յիշեալ երեք հատորների մէջ, որոնք պարունակում են երեսունըչորս նորավէպ, չըկայ քաղաքական ծանր վիճակի մասին ոչ մի խօսք. մի տեսակ լռութեան վարագոյր է քաշուած այդ երկրի իշխանութեան վրայ։ Այս տեսակէտից կարելի է պակասաւոր համարել նրա պատմուածքների մէջ հանդէս եկած գործողութեանց ֆոնը։ Ելդըզ-Քէօշքը, մինարէները, թուրք ժանդարմը, ռէժիմը, քրիստոնեաների և մանաւորապէս հայերի գլխիկոր կերպարանքները մոլեռանդ տաճիկների հետ խօսելիս՝ չեն ցցւում Պոլսի և շրջակայ այն վայրերում, ուր գործում են Զօհրապի հերոսները. ուզում եմ ասել, որ տաճիկ կառավարութիւնը աղաւաղել է ոչ միայն մեր կեանքը, այլ և մեր գրականութիւնը։

Բայց և այնպէս Արմենիուս պատմուածքի մէջ գտնում ենք հետևեալ սրտառուչ տողերը, որոնք ամփոփում են տաճկահայերի քաղաքական տառապանքների նուրբ արտայայտութիւնը։ Երբ մի քանի յոյն նախանձով ասում են մի հայ երիտասարդի, թէ սա իրենցից բաղդաւոր է, քանի որ, իբր հայ կարող է հեշտութեամբ ծանօթանալ ծովափի կազինոն յաճախող այն գեղեցիկ հայ կնոջ հետ, որը ոչ մի ուշադրութիւն չէ դարձնում իրենց վրայ, հայ երիտասարդը մտածում է. «Առաջին անգամն էր աշխարհիս վրայ, որ հայ ըլլալու մէջ առաւելութիւն մը կը գտնէի...»

Մ. Մատէնճեան

(Կը շարունակուի)

---

*) Տես Բանբեր Գրականութեան եւ Արուեստի հանդէսի I և II գըրքերում «Արեւմ. հայոց արդի գրակ.» յօդուածը, Սրուանձտեանի ազգագրական ժողովածուները և Ար. Վ. Տէր-Սարգսեանցի Պանդուխտ Վանեցի։

**) Տես Լէօի Գրիգոր Արծրունի աշխատութեան II և III հատորները։

Մ. Մ.

# Մատենախօսութիւն

**Վ. Թէքէեան. Բանաստեղծութիւններ. պրակ առաջին. 1916 թ. Թիֆլիս.**

## ՄԱՐԴՈՒ ԵՐԳԻՉԸ

*(Հոգեբանական վերլուծութիւն)*

Թէքէեանը նոր դէմք չէ հայ պարբերականների և ընթերցող հասարակութեան համար։

Զբաղուել Թէքէեանի բանաստեղծութիւնների վերլուծութեամբ, նշանակում է երեք էական հարցի լուծում ու բնորոշումը տալ. առաջին՝ հայ նոր ու նորագոյն քնարերգութեան մէջ, մանաւանդ Իսահակեանից և Տէրեանից յետոյ, ինչ գեղարուեստական նոր արժէք է ի յայտ բերում Թէքէեանը. երկրորդ՝ ինչ և ինչպէս է ստեղծագործում այս մրրկի մէջ, և երրորդ՝ որքան ինքնուրոյն է մնացել այս ժխորի մէջ. ասել կուզենք, որքան է բանաստեղծ և որ չափով սոսկ հասարակական միաւոր։ Իսահակեանը մինչև իր տաղանդի ամբողջացում ու կազմակերպումը մի հսկայական անցում ունի. կոնկրէտից, «Ալագեազի մանրիններից» մինչև աբեղը, որպէս սիմբոլը յաւիտենականութեան ու վերջնական հանգրուանը։ Իսահակեանը կենսամերժ է, որովհետև տուեալ համակեցութիւնը իր կենսաձևով զուգահեռ չէ նրա ապրումներին. եթէ փոխուի, վերադարձը Իսահակեանի համար գեղեցիկ վայրէջք կլինի, անգամ ցանկալի։ Իներտ է Իսահակեանի հոգին, ոչ ինքնին, այլ որովհետև մթնոլորտը համակիր չէ։

Տէրեանի արժէքը ինքն է. իրենից ելնում ու իրեն է օգնում, ապա գեղեցկացնում է ինքն իրեն ու երգում իրեն.

Ես իմ սէրն եմ սիրում...

Միտքը Տէրեանի մօտ ձայն չունի, համր է ու կոյր. իներտ է Տէրեանը ըստ ամենայնի և ըստ էութեան, հասարակական «Ես»-ի և իր «Ես»-ի միջև ոչ մի կամուրջ։ Իսահակեանը Մարգարէ-բանաստեղծ. ինքն ու ինտելլիգենտը, ինքն ու հասարակական «Ես»-ը ձուլուած են։ Տէրեանը առայժմ ճանաչում է իր «Ես»-ը և գերազանցապէս բանգէտ (ինտելլիգենտի) երգիչ է։

Որպէս տաղանդ, Տէրեանը չունի աշխարհապրում, այլ ունի միայն ինքնապրում. այն ինչ, Իսահակեանը որպէս քնարերգու (լիրիկ) ունի և ուժեղ ինքնապրում, և խորունկ աշխարհապրում։

Այս սեղմ բնորոշումներից յետոյ հետաքրքրական է Թէքէեան բանաստեղծի գեղարուեստական արժէք-գեղեցիկը։

Այս օրերում ազգերի բախտին հաւասար, կանգնած է նաև մի ուրիշ արժէք՝ նոյնքան ամբողջ, որքան ազգ-կոլեկտիւի հաւաքական-կամքը։ Որքան այդ արժէքը ճանաչուել է որպէս քաղաքակրթական արժէք, բայց նոյն չափով և էլ աւելի, նա այժմ ոտնահարւում է ու արժէքաթափ լինում։ Այդ անհատ, սոսկական մարդն է։

Թէքէեանի գեղեցիկը Մարդն է, անպայման մեծատառով։

Ես սիրում եմ մոռնալ ինձ, ձուլուիլ
Ուրիշի տանջանքին—
Ուրիշին իմ սիրուցն տալ՝
Գուրգուրել կաթոգին։

Այս արժէքը մեր գրականութեան մէջ նոր է, որպէս յղացում-միտք, բայց ոչ որպէս յուզապրում—գեղարուեստական կերտում։

Մարդս, որպէս մեր սկզբունքների ելակէտ ու գործերի կենտրոն, սոսկ ուրեմն մի առանձին հանգամանք, մտքի բանաձևերին ենթակայ, այդ չափով Թէքէեանը մնում է մտքի սահմանում. բայց և մարդ արժէքը առարկայ (օբիեկտ) է նաև սքանչացման, պաշտումի, սիրոյ, յոյսերի, նաև խղճի. և ահա Թէքէեանը զգաց-

մունքի բնագաւառումն է, սքանչանում է․ միշտ հարազատ ինքն իրեն ու ինքնուրոյն։

Ինչպէս է գտնում իր արժէք-գեղեցիկը Բեալաշեան բանաստեղծը․ ելնում է իրենից, որոնում է կեանքում իր գեղեցիկը, տարածւում, գտնում․ այս ամբողջը Բեալաշեանի մօտ մտային գործ (ակտ) է, ներհայեցութեան (ինդուիցիայի) փոխարէն․ գործի է կանչւում զուտ բանապաշտական (ռացիոնալ) տարրը հոգու, ապա դառնում է ինքն իրեն ու երգում իրենը, բայց մերը՝ կեանքինը պատկերւում է նուաղած ձևով, հասունանում, գունւում, բայց չի ջերմացնում, ու հոսում է երգերի մէջ։ Այս վերջին հանգամանքի տէրն ու շինարարը ինքը հզօր զուգորդումն է։ Պատկերաւորումը, մտքի բանաձևեր են, սրտի շունչը չառած։ Բեալաշեանի շնորհքի ամենամեծ գեղարուեստական պակասութիւնն այն է, որ աշխարհիմացումը նախորդում է աշխարհապրումին․ որից և նրա գեղեցկի յուզական ընդհանրացումը դատողական է և թոյլ։

Առօրեայ կեանքում, մարդը որքան զուտ դիտողութեան առարկայ (օբեկտ) է, միայն երևոյթ, օրգանիզմ մեզնից դուրս, Բեալաշեանի մակերեսային ընթերցումն էլ կլինի սառը, կընկատուի ոտանաւորների շարք և բնաւ ստեղծագործութիւն, հոգեբանական գիտ-կերտում, գեղարուեստական ողբերգ (տրագեդիա)։ Բայց երբ դիտողութեան առարկան (օբեկտը) դառնում ես դու, որ դարերի խօսքն ես ներկայի առաջ, որպէս արժէք-ոչնչութիւն ես, մասնիկ, բայց և որպէս ամբողջութիւն էլ, կամուրջ ես, միայն ձև, ահա յառնում է ողբերգը (տրագեդիան)։ Բեալաշեանի խորագնին ընթերցումը բաց կանի իւրաքանչիւր մարդ-ամբողջի հոգում այդ ողբերգը։

Իր գեղարուեստական գեղեցկի Մարդու, տրամաբանական հետևութիւնը կլինէր հասարակական «ես»-ի ուժեղ զգացումը, և իրօք, Բեալաշեան բանաստեղծը, նախքան իր բանաստեղծական կոչման վերահասու լինելը, իր հասարակական «ես»-ի ուժեղ ինքնապրումն ունի․ այստեղից է ելնում այն խորը հակադրութիւնը, որ Բեալաշեանի սրտի տակ ուժեղաձայն կերպով խօսում է նրա միտքն ու հասարակականը։ Երբեմն ի վնաս իր գեղարուեստական գեղեցկի յուզական կերտաւորման։

Բեալաշեանի Մարդ-գեղեցիկը, որ գեղարուեստական յղացում է, վկայում է այն փաստը, որ Մարդը Բեալաշեանի մօտ վերացական (աբստրակտ) է, բնաւ թանձրացեալ (կոնկրէտ)․ այս կամ այն եզակի դէմքը, և կամ մի ամբողջականութիւն ունի իր մէջ, որ էլի հեռու է թանձրացեալից (կոնկրէտից)։ Այս ամբողջականութիւնը երգելու դէպքում, Բեալաշեանը հասարակական «ես»-ի հրամանով է, որ շպրտում է իրեն կեանք, իր գեղեցկին մարմին տալու և ընտրում է միշտ բնորոշը, տիպականը։

Շատ են նոքա, անհաշիւ է ամեն օր, ամեն օր․
Սևաւորւում են անվերջ թշուառները նորանոր։
Կայարանում հենց հիմա անջատուեցին շատ-շատեր,
Անջատումներն անվախճան վաղն էլ, վաղն էլ կերթան դեռ։
Ով որ մնաց—վա՜յ նրան, արդէն խեղդող երազում,
Իրեն այրի է տեսնում, տխուր սևին սպասում։
Եւ անցնում են գլխիկոր սևազգեստներն անհամար—
Լուռ են նոքա, որպէս վիշտ, գունատ, որպէս պաղ մարմար։
Նրա՛նք, որ սև են հագել, նրանք հիմա որ հագան,
Նրա՛նք, որ սև են հագնում երազներում խօլական։

Ընդհանրապէս է վերցրուած այրու գաղափարը, ինչպէս և Բեալաշեանի միւս գաղափարները․ «թշնամի», «եղբայր» և այլն․ այրին մեզ մօտ, թէ մի այլ երկրում, միևնոյն է, թէ հոգեկան վիճակը և թէ արտաքինը։

Այստեղ նաև պարզւում է այն հանգամանքը, որ Բեալաշեանի Մարդը գեղեցիկը նկարում ու երգում է, ոչ որպէս մասնիկ, եզակիութիւն, այլ որպէս ամբողջ, որպէս մի աշխարհ։ Բեալաշեանին դէպի մարդը մղողը բարոյագիտականը չէ բնաւ, այլ զուտ նրա Մարդ-գեղեցկի ամբողջ շէնքը, անհատնում ինքնանպատակ լինելը։ Նրա սէրը դէպի ընդհանրապէս մարդը։

Թշնամիներ արիւներազ, յիշաչար,
Չեմ հաւատում ձեր չարութեան, ձեր ոխին,
Ես սիրում եմ ձեր հոգիները պայծառ,
Եւ հաւատում ձեր հոգեթով ծիծաղին։

Մտքի դերը, որ այնքան մեծ է Բեալաշեանի ստեղծագործութեան մէջ, չպէտք է նկատուի որպէս պակաս (մինուս) նրա կորուկի․ այդ նախ և առաջ խորացման ճանապարհն է, դէպի երևոյթների ներսն ու իմաստը և այդ ճանապարհով է, որ բանաստեղծը պէտք է ընդգրկէ աւելի հեռուները, և նրա երգած արժէքը պէտք է դառնայ աւելի գեղեցիկ ու պարզաբանուած ամեն կողմից։ Այդ ճանապարհը հասունութեան ճանապարհն է։ Եթէ մտայինի մ ա ս ն ա կ ց ու թ ի ւ ն ը (միայն մասնակցութիւնը) նկատուի որպէս պակաս, նուազագոյն կերպով, ապա ռուս բանաստեղծ Ֆ. Սոլոգուբը չպէտք է լինէր այնքան տիրական ու հմայիչ։ Բեալաշեանի այդ ճանապարհը սկզբից և եթ որոշել է բանաստեղծի տեղը այս արևի աշխարհում ու ամրացրել նրա ոտքի տակի հողը։ Նա մարդու համար է երգում։ «Ոչ թէ հնազանդ է ու հաշտ այն աշխարհին, որն Աստուած է ստեղծել, այլ շարունակում է Աստուծոյ ստեղծագործութիւնը»… Ասում է ռուս նորագոյն քննադատ Իւր. Այխենվալ'դը Սոլոգուբի մասին։ Եթէ զուտ քնարերգակը (լիրիկը) աշխարհն ապրում է, ունի աշխարհապրում, ապա Բեալաշեան բանաստեղծը ունի և աշխարհապրում և աշխարհիմացում․ այս երկրորդ հանգամանքն է, որ նրա մէջ հասարակական «ես»-ի շեշտուածութիւնը զգալի է դարձնում ու որոշ։ Նա մնում է մեզ հետ արևի տակ երգելու և թաղուելու։

Կարդում ես Տէրեանը, կարծես երազում երազ ես տեսնում․ Բեալաշեանը քեզ դնում է հողի վրայ և մենակ չի թողնում․ քո ընկերը մարդն է, տալիս եմ նրան քեզ, պէտք է սիրես։ Ահա Բեալաշեան բանաստեղծի նոր բարբառը։ Մարդը գեղեցկութիւնների գեղեցիկն է, նպատակների վերջակէտը, պատրանքների պատրանքը (իլուզիաների իլուզիան)։ Նրա մէջ ամեն ինչ կայ, երազ և իրականութիւն, ընդհանուրն ու մասնաւորը, միտն ու զգայականը, բայց և հոգեղէնն ու իդէալականը։ Բեալաշեանի գրած ու երգած արժէքը մեծ է, նոր, ամեն ինչ ունի և կ ե ն ս ա կ ա ն է։ Ահա Բեալաշեան բանաստեղծի գոյութեան արդարացումը։

Գ. Շահինեան

(Շարունակութիւնը հետևեալ համարում)

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ

*Խմբագիր՝ Կ. ԿՐԱՍԻԼՆԻԿԵԱՆ*

*Հրատարակիչ՝ Ա. ՏԷՐ-ՂԱԶԱՐԵԱՆ*

*Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի* Типографiя „Прогрессъ“, Лорисъ-Меликовск. 1. Дозволено военной ценз.

